# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## №: 6 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

# ԱՄՌԱՆ ԿԵՍՕՐ

Արևն հասավ զենիթին,
Ասաց՝ մի քիչ շունչ առնեմ,
Ժամապարհս կիսեցի։

Ծիտը ծառի սաղարթում
Երգեց՝ համերգն արեց կես,
Ասաց՝ հիմա ընդմիջում։

Մեղուն անցավ սար ու ձոր,
Նեկտարի կեսն հավաքեց,
Ասաց՝ քնեմ, շատ է շոգ։

Բահը ելավ մարգից դուրս,
Հոգսն ու գործը կես արած,
Թիկն տվեց ստվերում։

Ասաց՝ ես էլ առնեմ շունչ,
Քանի քնած են խաղաղ
Արևը, ծիտն ու մեղուն։

# ԻՆՉՊԵՍ Է ԾՆՎՈՒՄ ԾԱՂԻԿԸ

Ձյունից հետո ծիլերն հողից
Դուրս են գալիս միանման,
Թե ո՞րն է խոտ, ո՞րն է ծաղիկ՝
Ծիլերն իրենք չեն իմանում։
Նրանց շուրջը պղտոր ջուր է,
Մռայլ քար է, ամպոտ երկինք,
Թռչունները չեն երգում դեռ,
Մեգ-մշուշ է գետի հագին։
Մի ծիլ սակայն շատ է ուզում,
Որ աշխարհում փոխվի մի բան,
Ծնվի մի նոր գույն ու շարժում,
Մի նոր երազ, մի նոր թռիչք,
Եվ այնքան է ուզու՜մ, ուզու՜մ,
Որ, այ զարմա՜նք, հենց իր վրա
Ծաղկի քնքուշ թերթ է բուսնում,
Շուրթին՝ բացվում բույր ու հմայք։

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# ՎԻՐԱՎՈՐ ԹԻԹԵՌԸ

Գարունը հենց բացվում է, գետինը մի լավ չորանում, դողոշներն իրենց անհայտ աշխարհից միանգամից են հայտնվում: Հենց մթնեց, էլ գյուղի փողոցներով անցնել չի լինում, ամեն քայլափոխի ոտքիդ տակ են ընկնում: Նրանց նաև ցամաքի գորտ ենք անվանում, բայց գորտերը ափսոս չե՞ն սրանց մոտ: Գետում չլմփալով լողանում են,երեկոները էլ այնպիսի համերգ են սկսում, որ մանկությանդ մոռացված բույրերն ու մեղեդիները քեզանից անկախ արթնանում են հոգուդ գաղտնարաններում, երազներիդ նոր երանգ տալիս, քեզ իրենց թևերին առնում, տանում երկնային թագավորության սահմանները:

Չեմ հավատում, թե լինի մարդ, որ դոդոշներին սիրի: Մեր Արտիկը բացառություն է: Իր բոյի երկու մեծության մի փայտ է վերցնում ու ընկնում դոդոշների ետևից: Իսկ նրանք մահ գալ չգիտեն, ցատկելով են առաջ շարժվում: Արտիկը ո՛չ վախենում է, ո՛չ զզվում: Այնքան է հալածում, որ դոդոշը հոգնում, ուժասպառվում, էլի չի կարողանում արագ ցատկել: Հենց այդ ժամանակ էլ վրա է թռչում, բռնում: Ինչքան գոռում ենք, ճչում, որ դեն նետի, չի լսում: Փոքրիկ ափի մեջ շուռումուռ է տալիս, սկսում զննել աչքերը, ոտքերը, մաշկը: Մեծ եղբայրս, որն ըմբշամարտի գծով սպորտի վարպետ է, բարձրահասակ ու թիկնեղ մի հսկա, հենց որ Արտիկի ձեռքին դոդոշ է տեսնում, դառնում է մի բուռ, խեղճացած ու սարսափահար խնդրում է.

— Արտի՛կ ջան, ցա՜վդ տանեմ, դե՛ն գցիր...

Իսկ Արտիկը, որ ընդամենը յոթ տարեկան է և այս տարի է դպրոց գնալու, զարմանում է հորեղբոր վրա ու հանգիստ ասում.

— Հորեղբա՛յր, հյա ձե՛ռք տուր, փափուկ է, չի կծում, բերա՞նը տես:

Իսկ հորեղբայրն արդեն ձեռքից գնում է: Զարմանալի է եղբայրս էլ. արջի ու գայլի հետ կոխ կբռնի, բայց օձի նկարից վախենում է, դոդոշից սարսափում, մկան ծվծվոցից վեր թռչում: Ծիծաղում ենք, ձեռք առնում, ամոթանք տալիս, բայց ի՞նչ...

Գարնանային փափուկ երեկո է՝ անուշ կանչերով ու բույրերով: Ես ու Արտիկը գետափից տուն ենք դառնում: Մտքերիս ետևն ընկած դանդաղ քայլում եմ, երեխան էլ իր սովորական գործով է զբաղված՝ այսինքն դոդոշներ է փախցնում: Երկու դրկից չափարների արանքում ջրի ծորակն է և փողոցի միակ լուսավորված սյունը: Ջուրն ու լույսը տեսնելով, Արտիկը վազում է ու քիչ անց ինձ նայում: Ես նրա կանչին նշանակություն չեմ տալիս, համոզված, որ իր հերթական զոհին է գտել: Իսկ նա շտապեցնում է: Մոտենում եմ և տեսնում չափարի մեջ, գետնի վրա դեղին ու պսպղուն թևերով մի թիթեռ: Աջ թևը չի շարժվում, իսկ ձախը հուսահատ թափահարում է:

— Ինչու՞ չի թռչում,— Արտիկը լացակումած հարցնում է:

— Մի թևով չեն թռչում,— նայում եմ թիթեռի անզոր շարժումներին, հետո կռանում վերցնում, ափիս մեջ շուռումուռ տալիս: Արտիկը հետս կռանում է, հետս բարձրանում, ուզում է ձեռք տալ, թիթեռը ավելի է արագացնում միակ թևի հուսահատ թափահարումը:

— Ի՞նչ է եղել թևին,— հարցնում է:

— Դոդոշը կոխել է,— պատասխանում եմ ու մտածում, որ հարմար պահ է երեխային դոդոշներից կտրելու համար: Մի պահ մտածկոտ է դառնում, աչքերը զայրույթով են լցվում:

— Դոդոշի ոտքը փափուկ է, թևը չի ջարդի,— համոզված ասում է նա:

— Թիթեռի համար դոդոշը փիղ է:

— Չէ՛, հորաքո՛ւյր, դոդոշի ոտքը փափուկ է,— չի համաձայնում:

Նայում եմ պլպլան թևիկին: Գարնան առաջին թիթեռներից է՝ ոսկեդեղին, փայլուն ու պսպղուն: Այդպիսին են գարնան առաջին թիթեռները, ասես ծնվում են աշնանացանի նոր թփակալած մուգ կանաչներից, հետո աննկատելի ցրվում դաշտերում ու այգիներում, իսկ երբ հասնում են ցաքուտներին ու քարափներին, փոխում են թևիկների նրբությունը և գույնը, ավելի մգանում:

Ես ու Արտիկը վշտահար նայում ենք միթևանի թիթեռին ու չգիտենք ինչ անել:

— Տանենք բուժենք,— առաջարկում է ու նորից ձեռքը դիպցնում թիթեռին, և նորից թիթեռը արագացնում է միակ թևի հուսահատ թափահարումը:



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

— Ձեռք մի՛ տուր,— ասում եմ խնդրելու պես,— մեղք է, վիրավոր է: Դնենք իր տեղը:

— Չէ՛, բա որ դողոշը նորից կոխի ու սպանի՞: Տանենք տուն: Ես կպահեմ:

Թիթեռին վերցնում եմ ափիս մեջ և շարժվում ենք տուն:

Գարնանային երեկոն թարմ կանաչների ու խոտերի, ծաղկած նշենիների ու պայթող կոկոնների բույրերով քաղցր գլխապտույտ է առաջացնում, անուշ թմրությամբ քեզ օրորում: Դիմացի անտառում անվերջանալի կանչերով գեղգեղում են գիշերահավքերը: Եվ այդ բոլորի մեջ, ինձ թվում է, ամենահրապուրիչը խեղված թեվիկով այս թիթեռն է, որի միակ թևը ոսկեգույն ցոլանքներով պլպլում է լուսնյակի լույսի տակ:

Ափիս մեջ մի կյանք եմ տանում, մըտածում եմ ակամա, և ի՛նչ կյանք՝ ընդամենը մի օրվա: Մուգ կանաչների մեջ անհոգ թռվռացել է ողջ ցերեկը, արևի ջերմությունից ու թարմ բույրերից արբեցել, մոռացել ինքն իրեն, իր ուր գտնվելը և, հմայված կյանքի քաղցրությամբ, չի հասկացել իր արածի հետևանքը, թռել է անվերջության միջով, խախտել իրեն հասանելիք սահմանները և մեկ էլ հայտնվել փոշոտ փողոցներում, մի օրվա գեղեցիկ կյանքը վերջացել է փշերի վրա:

Թիթեռը անշարժացել է ափիս մեջ: Երեխան նորից մատները մոտեցնում է, ու նորից սկսվում է միակ թևի թափահարումը... Ուզում է պաշտպանվել: Նույնիսկ մոմի բոցն է համառում, երբ փչում ես, որ հանգցնես: Հուսահատ ընդդիմություն, անզոր ճիգեր...

— Թիթեռն ի՞նչ է ուտում,— Արտիկը ինձ խոհերից հանում է:

— Թիթեռը ծաղիկների ու կանաչների բույրով է սնվում: Հիմա մենք նրան կտանենք ու բաց կթողնենք մեր պարտեզում: Գիշերը վարդերի վրա կքնի, կհանգստանա, առավոտյան կթռչի իր դաշտերը:

— Բա մի թևով ո՞նց կթռչի:

— Գիշերը կբուժի նրա վիրավոր թևը:

Երեխան կարծես հավատում է ինձ, և վիրավոր թևով թիթեռին մենք դնում ենք պարտեզի ամենախիտ կանաչների մեջ, որտեղ թանձրացող մութը ավելի էր խըտացրել գույները և որտեղ գարնանային գիշերը թավշյա քնքշությամբ կօրորի թիթեռի վերջին ննջը:

ԵՐԳԵՐ՝ ԳՐՎԱԾ ՌԱԶՄԻ ԴԱՇՏՈՒՄ

# «...ԵՍ ՏՈՒՆ ԿԴԱՌՆԱՄ, ՄԱՅՐ ԻՄ ՍԻՐԱՍՈՒՆ»






1940 թվականին Գրիգորը Երևանի Ժդանովի անվան ռուսական մանկավարժական ինստիտուտի գերմաներեն բաժնի ուսանող էր, երբ զորակոչվեց սովետական բանակ՝ Լվովի տանկային զորամաս և շատ կարճ ժամանակում դարձավ հմուտ տանկիստ, առաջին մկրտությունը ստացավ Լվովում, մասնակցեց Ստալինգրադի, Մոսկվայի, Հյուսիսային Կովկասի, Ղրիմի, Կուբանի, Զապորոժիեի, Պոլտավայի, Խարկովի, Չերկասսկի, Լվովի, Ծպոլայի ազատագրման համար մղված մարտերին...

Թշնամին օղակի մեջ էր առել Ուկրաինան: Սովետական բանակի ստորաբաժանումները մարտական ակտիվ գործողություններով առաջ էին շարժվում, կռվում էին յուրաքանչյուր թիզ հողի համար: 71-րդ տանկային գունդը աչքի էր ընկել Վիննիցա, Ժիտոմիր, Կիև քաղաքների ազատագրման մարտերում, ուր տանկի հրամանատար Գրիգոր Հակոբյանը պարգևատրվեց «Փառքի շքանշանով»:

Հարազատներին գրած նամակներից երևում է, որ Գրիգորը անսահման սիրով էր կապված հայրենի Եղվարդին: Իր տանկի խցիկում, որտեղ նա անց է կացրել 1000 օր, հաճախ մտաբերում էր Հայաստան աշխարհը, հիշում մոր թխած անուշաբույր լավաշը, ցորենի ոսկեծուփ արտերը, գյուղի տան տանիքում բույն դրած արտույտների անուշ երգը... և ինքն էլ նոր երգեր էր հորինում ու դրանք նամակ առ նամակ ուղարկում հարազատներին: Նամակները ճերմակ աղավնիներ դարձած՝ ճախրում անցնում էին մահվան ու արյան ճամփաները: Ավելի քան 150 բանաստեղծություն, նամակ և օրագիր է ուղարկել տուն տանկիստ-բանաստեղծը:

Հիմա Եղվարդում վարդերն են բացվել,
Ոսկի հասկերն են ծփծփում դաշտում,
Երկինքն է լույսի ցոլքով լվացվել,

Լորն ու արտույտն են ուրախ համերգում:
Մայրս թոնրի մոտ նոր հաց է թխում,
Կամ թե հարում է բակում խնոցին,
Անհուն կարոտի կրակն է ծխում,
Զուլվում հոգեթով երազի բոցին...

1944 թվականի փետրվարի 4-ին 71-րդ տանկային գունդը կատաղի մարտեր էր մղում Ուկրաինայի Չերկասսկի մարզի Շպոլա քաղաքի ազատագրման համար: Թշնամին գյուղի շրջակայքում էր: Գրիգոր Հակոբյանը տանկի խցիկից ռադիոգըծով կապ է հաստատում հրամանատարության հետ և ստանում հրահանգ մարտական գործողությունները շարունակելու մասին: Թշնամին կրակ է բացում, և Գրիգորի տանկը բոցավառվում է: Տանկիստի հետ միասին զոհվում է ողջ անձնակազմը՝ Կոստյա Լոսևը, Սաշա Լեսկովը, Վասյա Տիմոշենկոն, Վանյա Օսիպովը:

Գրիգորը չհասցրեց տեսնել իր կյանքի 24-րդ գարունը... Նրան չհաջողվեց տեսնել նաև 1945 թվականի հաղթական մայիսը:

Տանկիստ-բանաստեղծ Գրիգոր Հակոբյանի աճյունը ամփոփված է Չերկասսկի մարզի Շպոլա քաղաքի եղբայրական գերեզմանատանը:

Անցե՛ք իմ մոտով, իմ հարազատներ,
Հպարտ, անշշուկ, անուրախ, անլաց,
Խոնարհե՜ք մի պահ գլուխները ձեր,
Որտեղ ձեր հերոս եղբայրն է թաղված...

Ամեն գարնան այցելում են նրան Գրիգոր Հակոբյանի հարազատները, կատարում են իրենց եղբոր խնդրանքը՝ լուռ խոնարհվում են նրա շիրիմի առջև: Նրանք հանդիպումներ են ունենում Շպոլայի պիոներ-դպրոցականների հետ, այցելում են քաղաքի փառքի սրահը, որտեղ պահպանվում են նաև հերոս տանկիստ-բանաստեղծի փաստաթղթերն ու լուսանկարները:

Շպոլայի № 4 դպրոցի պիոներական դրուժինան և քաղաքի փողոցներից մեկը կրում են Գրիգոր Հակոբյանի անունը, իսկ հերոսի ծննդավայրում՝ Եղվարդում, ինչպես նաև Երևանի № 82 և Լենինականի Րաֆֆու անվան դպրոցների պիոներական ջոկատներն ու դրուժինաները ևս կրում են նրա անունը:

Երևանի «Հայաստան» և Կիևի «Մոլոդ» հրատարակչությունները հայերեն և ուկրաիներեն լեզուներով լույս են ընծայել Գրիգոր Հակոբյանի «Մխրանքի և սիրո երգեր» ժողովածուն:

ԲԱԲԿԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

## ԿԱՆԽԱԶԳԱՑՈՒՄ

Կզոհվեմ մի օր դժնի արկերից
Հեռավոր երկրի մի անհայտ ափում,
Չի լինի կողքիս ոչ մի կարեկից,
Սիրտս այդ պահեղ գույժն է տրոփում:

Հողմը կբերի հեռավոր մի ամպ
Բարձր լեռներից իմ Հայաստանի,
Մորս կարոտած սրտի տխրությամբ
Ամպը կլացի իմ գերեզմանին:

Անհուն երազիս ձայն ու կանչերից
Ամեն գարունքին մի երգող թռչուն
Մորս վշտերին այնպես կարեկից
Պիտի ճռվողա Եղվարդի դաշտում:

1944 թ. Չերկասսկի մարզ, գործող բանակ

## ՆԱՄԱԿ ԵՂԲՈՐՍ՝ ԳԵՎՈՐԳԻՆ

Հիմա կռիվ է, սիրելի՛ եղբայր,
Աշխարհն աշխարհին՝ մահ ու թշնամի,
Ես էլ քեզ նման զարմով քաջաբար
Կռվում եմ պահեղ փորձության ժամին:

Մեզ չեն սասանի հողմերն ամեհի,
Խուժող թշնամու ոհմակները չար,
Վրեժ է գոչում հայրենիքն հիմի,
Մեր սուրն է կտրուկ և գործն է արդար:

1943 թ. Կովկաս, գործող բանակ

ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԸՆՏՐԵԼՈՒ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

# Տասներկուամյա ճանապարհ

Սովետաշենի տրիկոտաժի միավորման արտադրամասերում դուք կհանդիպեք բազմաթիվ դպրոցականների: Նրանք № 95 և № 175 դպրոցների իններորդ և տասներորդ դասարանցիներն են, մյուս աշխատողներից տարբերվում են ոչ միայն պատանեկան աշխույժով, այլև հագների մաքուր, սպիտակ խալաթներով: Այդ խալաթներն իրենց պատմությունն ունեն: Նրանցից մեկն, օրինակ, տասներկու տարեկան է, հերթով այն հագել է միևնույն գերդաստանի 10—12 երեխա: Հագնողները և՛ տղաներ են եղել, և՛ աղջիկներ, դրա համար երկու կողմից էլ կոճակներ ունի. շիտակ՝ աղջիկներն են հագնում, թարս՝ տղաները: «Խալաթի պատմությունից» երևում է, որ այստեղ ընտանիքներով, գերդաստաններով են աշխատում: Հարությունյանների, Գասպարյանների, Երմազյանների ու Դադյանների գերդաստաններից յուրաքանչյուրը ֆաբրիկային տվել է մոտ երեսուն աշխատավոր: Իսկ Գասպարյանների գերդաստանից կողք-կողքի աշխատում են երեք սերունդ՝ պապ, հայր, որդի: Աշխատանքի ուսուցման դասատու Ռազմիկ Հովսեփյանը մի քանի գերդաստանային ալբոմներ ունի, որոնք շարունակ լրացվում են: Նրա մոտ մի շատ հետաքրքրական ալբոմ էլ կա, 770-ից ավելի շրջանավարտների լուսանկարներով ու համառոտ կենսագրականներով, որոնցից շատերը աշխատում են այստեղ՝ ֆաբրիկայում, որտեղ և ժամանակին անց են կացրել ուսումնաարտադրական պրակտիկան: Այժմ տրիկոտաժի միավորման աշխատողների շուրջ 80 տոկոսը № 95 դպրոցի նախկին սաներն են: Նրանց թիվը գնալով աճում է, և դա չի կատարվում արտահոսքի հաշվին՝ միավորումը տարեցտարի ընդլայնվում է, ընդարձակվում: Ամեն տարի դպրոցը միջին հաշվով տալիս է քառասունհինգ շրջանավարտ: Նրանցից քսանը-քսաներկուսը աշխատանքի են անցնում ֆաբրիկայում: Դրանք այն աշակերտներն են, որ տարեվերջի քննությունները հաջող հանձնելով, ստանում են համապատասխան կարգ, որակավորում: Մյուսները ֆաբրիկայից բաժանվում են ժամանակավորապես, որովհետև նրանց մեծ մասը ընդունվելով ուսումնարան, շարունակում է ուսումը մասնագիտության գծով: Եվ եթե նկատի ունենանք, որ այս ավանդույթը սկիզբ է առել տասներկու տարի առաջ, և այդ բոլոր տարիներին իններորդ, տասներորդ դասարանցիների ուսումնաարտադրական պրակտիկան ղեկավարել է ընկ. Հովսեփյանը, զարմանալի չի թվա, որ ֆաբրիկայի տարբեր արտադրամասերում ում էլ որ մոտենաք, կասի, որ ընկ. Հովսեփյանի նախկին սանն է: Սեդան դպրոցն ավարտել է 1978 թվականին, աշխատում է այն արտադրամասում, որտեղ և անցկացրել է ուսումնաարտադրական պրակտիկան: Օհաննան դպրոցն ավարտել է 79-ին: Պրակտիկան անց է կացրել «Կոտոն» արտադրամասում, այստեղ էլ աշխատում է: Այս արտադրամասի աշխատողների իննսունհինգ տոկոսը № 95 դպրոցի նախկին սաներն են: Հրաչյան դպրոցն ավարտել է 71-ին, առաջավոր բանվորուհի Ծաքեն 78-ին, Ռուզաննան 77-ին...

Դպրոցականները տարբեր արտադրամասերում ծանոթանում են տասնչորս, խորանում և տիրապետում են երեքից-չորս մասնագիտության:

ՍՏԵՓԱՆ ԶԱՔԱՐՅԱՆ




Ինձ համար շատ հեշտ է գրել մեր ընտանիքի մասին, որովհետև մեր ընտանիքում օրն ուրախ ու համերաշխ է անցնում:

Ծատերն ասում են, որ փող ու հարստություն ունենաս՝ ուրախ ու երջանիկ կլինես: Հայրս հասարակ բանվոր է, մայրս՝ տնային տնտեսուհի: Ես ծնողներիս միակն եմ և այնուամենայնիվ մեր օրերն ուրախ են անցնում: Ուրեմն դա ճիշտ չէ, որ փողն ու հարստությունն են երջանկացնում մարդուն:

Հայրս շատ կատակասեր մարդ է: Նա ամեն օր աշխատանքից տուն է վերադառնում հոգնած: Թերթերից նորությունները իմանալուց հետո, պառկում է հանգստանալու:

Մայրս բոլոր մայրերի նման ցանկանում է, որ ոտքըս քարին չդիպչի: Նա ամեն ինչ անում է, որ ես ուրախ լինեմ, ոչնչից դժգոհ չմնամ:

Մայրս շատ համեղ կերակուրներ է պատրաստում: Նա լավ թխվածքների վարպետ է: Եվ ամեն անգամ, երբ հայրս ու մայրս նստած են կողքիս, ինձ թվում է, թե աշխարհում մեր ընտանիքից համերաշխ ընտանիք չկա:

**ԹԵՐԵԶԱ ԹՈՓԱԼՅԱՆ**
Երևանի № 187 դպրոց,
6-րդ դասարան

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԵՏԵՐԸ

Հայաստանի գետերը
Քարայծների պես անվախ
Ժայռից անդունդ են թռչում
Կապույտ, զվարթ և ուրախ:

Եվ որսորդը կարկամած
Չի իմանում ինչ անի.
Քարից թռչող ստվերը
Ջրվեժի՞ է, թե՞ այծի:

Ու թե հեռվից դու լսես,
Կթվա, թե ձորերով
Արշավում են ձիերը
Պողպատաձույլ պայտերով:

Եվ հեծյալներ կթվան
Հայաստանի գետերը՝
Աղեղների մեջ ձգած
Արծաթազօծ նետերը:

Չվախենաս դու, ճամփո՛րդ,
Թե որ իջնի գիշերը,
Քեզ հետ կգան եղբոր պես
Հայաստանի գետերը:

Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

ՖՅՈԴՈՐ ԿԱՄԱԼՈՎ




Գայլերը մտրուկի ետևից էին ընկել:

Գայլերը հինգն էին: Հինգ զույգ դաժան, անթարթ աչքեր հետևում էին պայծառ, ասես ոսկեջրված ու դեռ չոր լաթով էլ փայլեցված դեղնավուն մտրուկին:

Բայց գայլերին գույնը չէր հրապուրում: Մտրուկը գիշատիչներին գրավում էր իր անօգնականությամբ, նաև նրանով, որ երամակում տասնյակ մատակ ձիերի մեջ մենակ էր մնացել:

Փոքրիկ մտրուկին երամակապաններն կոչում էին Օլտին Դիվոնա՝ Ոսկե Խենթուկ: Գույնի և վայրի աշխուժության համար:

Գայլերը շուտ-շուտ հավաքվում էին գլուխ գլխի, խորհրդակցում և վերջապես նախապատրաստվեցին կռվի:

Նրանցից մեկը անակնկալ հայտնվեց երամակի երկայնահասակ դեղին առաջնորդի առաջ: Հովատակի չորս սմբակները մեկեն գետնից պոկվեցին: Մտրուկը ծառս եղավ և վրնջոցով նետվեց թշնամու վրա: Եվ երբ մահաբեր սմբակը ամբողջ թափով հասնելու էր գայլին, նա օձի նման խույս տալով, թաքնվեց թփերի մեջ: Հովատակի աչքերն արյունով լցվեցին, գայլի ետևից փռնչոցով նա էլ նետվեց թփերի մեջ:

Հովատակն ինքն էլ գազան կտրեց և ավելի ուժեղ ու ահարկու, քան գայլը:

Մոխրագույն գիշատիչը հովատակին երամակից տանում, հեռացնում էր: Այդ նույն պահին մյուս չորս գայլերը խցկվեցին մատակ ձիերի մեջ և հատեցին երամակը: Զրկվելով առաջնորդից, երիտասարդ ձիերը անիմաստ դեսուդեն ընկան, չհամարձակվելով փախուստի դիմել:

Գայլերը մտրուկին մոր հետ արագորեն երամակից կտրեցին և առաջ արած քշեցին ամառային հարթ տափաստանով: Ծուռով հինգերորդ գայլն էլ նրանց միացավ, գլուխը հազիվ պրծացրած հովատակից:

Գայլերը շտապում էին, չնայած գիտեին, որ մտրուկը երկար չի դիմանա այդ խելահեղ հետապնդմանը, իսկ իրենք բոլորովին էլ չէին ուզենա, որ նա ճանա-

պարհին մնար: Հարկավոր էր հնարավորին չափ հեռու գնալ: Հիմա դա էր ամենագլխավորը: Այնուհետև արդեն շտապելու հարկ չէր լինի:

Հովատակը փախած ետ եկավ երամակի մոտ, անհանգիստ վրնջալով պըտույտ եկավ վախեցած մատակ ձիերի շուրջը, հանգստացնելով նրանց: Պտտվում էր ու փնչացնում.— Ես քշել եմ թշնամուն, չվախենա՛ք:— Հետո կանգ առավ և ձիերը ձգվեցին դեպի նա՝ գլուխները նրա գավակին դնելու, աչքերը փակելու և հանգստանալու համար, որ նրա հզորությունը զորեղ է բոլոր չար ուժերից:

Հովատակը տմբտմբացնում էր գլուխը. այո, ես հզոր եմ: Մեկ էլ ներքին մի խոր տնքոց ցնցեց նրա մարմինը:— Ո՞ւր է այն անհնազանդ քացահարող փոքրիկը, որին առանց նայելու էլ միշտ տեսնում էր: Ո՞ւր է նրա մայրը:

Նորից գազազեց նա, պտույտ եկավ, ցրեց մատակ ձիերին և ծառս եղավ: Ու տեսավ հորիզոնում անհետացող մոխրագույն գազաններին ու մտրուկին զամբիկի հետ: Ուզեց պոկվել տեղից ու հասնել նրանց, բայց երամակի հուսահատ վրնջոցը ետ պահեց նրան:

Մատակ ձիերին կրծոտելով, հովատակը ետ դարձրեց երամակն ու քշեց Ոսկե Խենթուկի և նրա մոր հակառակ կողմը:

Տարօրինակ որոշում էր նա կայացրել:



Բլրապատի ետևում երեք հարյուր ձիերից կազմված հիմնական երամակը հյութեղ խոտ էր արածում: Նրան գլխավորում էր ծեր, աշնան գիշերվա պես սև ու երկարիրան հովատակը: Երամակի մոտ կային նաև երկու կատաղի գայլախեղդ գամփռ և երկու երիտասարդ երամակապան, բայց երամակի ղեկավարը, գլխավոր տիրակալը սև հովատակն էր:

Երամակապանները, հրացանները ուսերին, ռադիոընդունիչները վզներից կախած, գնում էին կողք կողքի, ծխելով և միտք անելով, թե Սաոիկը՝ խռովահույզ այդ հովատակը, ու՞ր տարավ իր փոքրիկ երամակը:

Հետո նրանք սկսեցին իրենց նժույգների արժանիքների մասին խոսել: Խոշոր, շեկ դոնչակի վրա նստած երամակապանը քմծիծաղով ասաց շքեղ կարաբաիրի վրա նստածին.

— Իհարկե, քո ձին ղալամով քաշած պատկեր է, բայց պատկերի վրա չես սլանա խանդակներով: Առավել ևս, Սաոիկի ետևից չես հասնի:

— Իսկ քո՞նը,— հարցրեց կարաբաիրի վրա նստածը:

— Իմ նժույգը՝ հրթիռը քեզ օրինակ:

Հարյուրերորդ անգամ նրանք վիճում էին, չնկատելով, որ երամակը, գլուխները դեպի բլուրները, կանգ է առել, ականջ է դնում:

Բլրի կողմից եկող դոփյունի տարափը սաստկանում էր: Սև հովատակը երամակի շուրջը պտտվելով իրար գլխի էր հավաքում ձիերին: Բլրի գագաթին հայտնվեց ու սրընթաց ցած սլացավ հոծ երամակը:

Առջևից սլանում էր սևակոճ ու սևաբաշ, գեղատես դեղին նժույգը:

Ծեր հովատակն անմիջապես պոկվեց երամակից ու սլացավ նրան ընդառաջ: Նրանք բախվեցին՝ ինչպես արևոտ օրն ու ամպրոպային գիշերը: Երկուսն էլ կանգուն մնացին և երկուսի կրծքից վագրի մռնչոց դուրս թռավ, որը կաղկանձի վերածվեց: Սև հովատակը երկար էր ապրել և քիչ մտրուկների չէր ջարդոտել իր կյանքի ընթացքում: Եվ առաջին անգամ էր իրեն արժանի հակառակորդի հանդիպում: Գուցե արդեն ծերացե՞լ էր, կամ գուցե և այն պատճառով, որ Սաոիկն իր զավակն էր:

Երամակապանները շտապեցին կռվի վայրը, երկար մտրակները քանդելով ու շրխկացնելով: Այնտեղ շտապեցին և գամփռները՝ կռվին չխառնվելով, այլ հետաքրքրությունից դրդված: Ջիերը հետևում էին, թե ինչո՞վ կավարտվի բարձրագույն իշխանության համար երամակում մղվող հերթական վեճը:

Սաոիկը ետ ընկրկեց, ավելին՝ փախավ: Գլուխն ուսին թեքած, ձախ կողմի վրա գրեթե փլված, նա հասավ երամակին, անցավ բլրի գագաթն ու անհետացավ:

Երամակապանները մտրակեցին ձիերին և սլացան դեպի բարձունքը:

Դիվոտե՞լ էր Սաոիկը, ի՞նչ է:



Մտրուկը չէր հասկանում, թե մայրն ինչու է վախից խելակորույս դողում ու խռխռացնում: Նա չէր վախենում իրենց հետապնդող մոխրագույն գազաններից: Ոչ մի շուն դեռ երբեք իրեն ձեռք չէր տվել: Իր այս կարճ կյանքում միայն դեղին հովատակի կատաղությունից էր վա-

խենում: Երբեմն երամակից փախչում էր, և ինչու՞ չփախչեր՝ մեն-մենակ չթափառեր թարմ օշինդրի մեջ, անարձագանք թողնելով մոր կանչերը: Մեկ էլ ծածանելով սև բաշը, նրա վրա էր գալիս ամպրոպը. կճզմեր, կտրորեր: Շրջաններ գծելով Սառիկը երամակի մոտ էր վերադառնում, խիստ, գոռոզ, ետ չէր նայում՝ համոզված էր, որ մտրուկը հետևում է իրեն:

Մայրը ջանում էր բլուրների կողմը թեքվել. այնտեղ գամփռներն են, մարդիկ են և որ ամենագլխավորն է՝ հզոր հովատակներն են, որոնք կպաշտպանեն իրեն ու զավակին: Նա փորձում էր արագացնել վազքը, գայլերին շրջանցելով՝ հասնել բլուրներին: Մտրուկը ետ էր մնում: Նա չարաճճի էր, կովասեր, բայց չուներ կյանքի համար պայքարելու բավականաչափ ուժ:

Նրանք բլուրներից հեռանում ու հեռանում էին և ձին յուրայիններին այլևս չէր տեսնում:

Գայլերն այլևս չէին շտապում: Նրանք իրենց հաշիվներն ունեին. ինչու՞ սպանեն պայծառ օրով բաց տափաստանում, որտեղ ամեն ինչ երևում է տասնյակ կիլոմետրերի վրա, ու հետո ողջ գիշեր քարշ տան որսը,— գայլերը հիմար չէին: Նրանք քշած տանում էին, ո՛չ ետ էին ընկնում, ո՛չ՝ առաջ, կարծես իրենց առջև ոչ թե որս էր, այլ երևելի անձինք, որոնց թիկնապահություն էին անում:

Ջոհերն այլևս ոչ մի տեղ չէին կորչի:

Կեսօրից անց էր, բայց մայրամուտին դեռ շատ կար:

Տափաստանը չէր խանձվել, կանաչ խոտը փափուկ էր, տեղ-տեղ դեռ կակաչներ էին երևում:

Խաղաղ էր տափաստանը:

Անամպ երկնքում փոքրիկ մի կետ էր կախված: Դա հզոր քարարծիվն էր, որն իրեն տափաստանի տիրակալ էր համարում: Իր անծայրածիր տերությունն էր աչքի անցկացնում: Քարարծիվը արտասովոր սուր տեսողություն ուներ, հիանալի տեսնում էր գայլերին, որոնք ցամքիկին մտրուկի հետ քշում էին դեպի տափաստանը կտրող խոր խանդակը:

Խղճահարության ու կարեկցանքի ըզգացումը ծանոթ չէր քարարծվին: Ինքն էլ արյունարբու գիշատիչ էր: Բայց գայլերին չէր սիրում: Առհասարակ ոչ ոքի չէր սիրում իր երկու ձագերից բացի: Մանրմունր գազաններին արհամարհում էր, խոշոր գազաններին՝ հանդուրժում, իսկ գայ-



Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉԵՂՅԱՆԻ

լերին չէր սիրում: Տափաստանային հըրդեհի պես ամեն ինչ ոչնչացնող բան էր համարում գայլերին:

Եթե քարարծիվը լեզու ունենար, կասեր. գողեր են և ոչ թե որսորդներ, տափաստանի աղվեսը դրանցից լավ որսորդ է:

Քարարծիվը շատ անգամ էր խոտնեցրել նրանց որսը, հաջողության դեպքում՝ նրանց քթի տակից թռցրել ու գոհունակությամբ հետևել, թե ինչպես են ատամները կրճտացնում:

Լայն թևերը ծալելով, քարարծիվը ցած նետվեց: Օդը շառաչեց: Նա աչքը չէր հեռացնում մոխրագույն գայլի ծոծրակից, որին նշան էր բռնել: Զայրացած, որ չի կարողանա բզկտել այդ ծոծրակը, նա դառնությամբ թափ տվեց իրեն և կվրիպեր, եթե մի ակնթարթ իսկ ուշ բացեր թևերը: Նա դիպավ գայլին և սարսափահար գազանի սուր գարշահոտությունը վեր նետեց քարարծվին:

Երբ ուժգին թևաբախումից շրջակա խոտը պառկեց, գայլը մեջքի վրա գլորվեց, շան նման վնգստալով թափահարեց թաթերը: Մինչդեռ հենց նոր վազում էր տափաստանով իբրև հաղթող, իր ուժի գիտակցությամբ, կուրծքը՝ լայն, ժանիքները՝ սուր...

Քարարծիվը կտրուկ վեր խոյանալով, հաղթականորեն կանչեց. «Ղա՛»:

Գայլերը կանգ առան, կատաղորեն սեպերը բացեցին:

«Հա՛, հա՛, հա՛,— նրանց գլխավերևում պտտվելով կռնչում էր քարարծիվը,— դե, հասե՛ք, բռնե՛ք ինձ, անթև, չորքոտանի՛ անասուններ»:

Մի անգամ ևս վայրասլաց նա ցած իջավ, բայց ոչ գայլերի վրա: Կայծակնորեն հայտնվեց զամբիկի առջև և, կարծես, պատնեշեց. զամբիկը կանգ առավ խանդակի մոտ, մտրուկին կողով սեղմեց հսկա գլաքարին և շրջվեց գայլերի կողմը:

Մահը վրա էր հասել: Այնուամենայնիվ ինչ-որ հույս ուներ: Եվ ձին վրնջաց, սակայն այս անծայրածիր տափաստանում ոչ ոք չարձագանքեց: Ձին սեղմեց ականջները և բացեց մեծ, դեղին ատամները, որոնք կարող էին այստեղ զենք ծառայել:

Կրկին վեր խոյանալով, քարարծիվը հեռավոր բլրի լանջին հայտնված ստվեր նկատեց: Ուղղությունը լայն պտույտով կարգավորելով, թռավ ընդառաջ: Եվ նայեց [illegible] բաշին:

Հովատակը դեպի խանդակն էր սլանում: Թռչում էր տափաստանն՝ փրփրով, և սմբակները հազիվ դիպցնելով գետնին: Քարարծիվը դժգոհությամբ նկատեց, որ հովատակը հասնում է փոքրիկ կետին՝ իր ստվերին:

Բայց նա խանդակից հեռու էր, շատ հեռու...

•

«Ինչու՞ կանգ առանք: Այս տեղն ինձ բոլորովին դուր չի գալիս»: Մտրուկը դընչով բոթեց մորը:

«Սուս կաց, սահիր քարերի ետևը»,— մաշկի դողոցով հասկացրեց մայրը:

Գայլերը կիսաշրջան կազմած, վաղելչորեն նստած էին, կարծես եկել էին զամբիկին հյուր՝ կումիս խմելու և համբերությամբ սպասում էին, թե նա երբ իրենց առջև կդնի սպիտակ ըմպելիքով տիկը: Մի փոքր հեռու, ծայրում նստած էր քարարծվից վախեցած գայլը: Նա ծամածըռվում էր, ռունգերից հոտ արձակելով, փըռշտում: Այլևս ծարավի չէր ուրիշի արյան: Գիշեր էր ուզում, միայնություն ու լուսին, որ երկարաձիգ կաղկանձով մահացու վիրավորանքն արտահայտեր, նորից հաստատելով, որ ինքը գայլ է:

Քարը տաք էր, և անհանգիստ շարժումներով մտրուկը փորձում էր մորը մի կողմ հրել:

«Նրանք բոլորովին էլ մեծ ու սարսափելի չեն,— մոր փորատակից գայլերին դիտելով ասում էր մտրուկը,— խոտերի մեջ մտնենք, հա՞»:

«Լռի՛ր և թաքնվի՛ր,— կրկնեց մայրը,— դու նրանց չգիտես»:

Երկար լարվածությունից ձին, ահա, ուր որ է մղաղակելու, աղմկելու, պոռթկալու էր:

Նրանցից մոտիկ նստած գայլը հորանջեց.— ձանձրալի է ապրելը,— և խոնարհեց գլուխը: Բայց ատամները կրճտացին, կարծես դանակներ բախվեցին իրար:

Կորանալով այնպես, որ ասես քորվել էր ուզում, գայլը ցատկեց ձիու վրա: Ցատկը բոլոր մանրուքներով հաշվարկված էր: Ձին, անմիջապես շրջվելով, աքացի տվեց, բայց չդիպավ:

Գայլը մի քանի անգամ կրկնեց նույնը:

Ցատկոտում էին և մյուս գայլերը, ու նորից ապարդյուն: Թվում էր, թե խաղ են անում: Վիրավոր մռութով, ծայրում նստած գայլն էր միայն, որ չէր մասնակ-

ցում խաղին, մի կողմ էր քաշվել:
Արևը մայր էր մտնում:
Քարարծիվը քամին թևերով բռնեց, և նրա ստվերը հասավ դեղին հովատակին: Տեսավ զամբիկին մտրուկի հետ, զարմացավ, որ նրանք դեռ ողջ են: Ուզում էր զվարճանալ նորից, բայց չհասցրեց: Չորս գայլերը միանգամից զամբիկի վրա հարձակվեցին:
Ձին ուժեղ վրնջաց: Նրա վրնջոցն ասում էր. «Զավա՛կս, հիմա քեզ ո՞վ կըպաշտպանի»:
Մտրուկն առաջին անգամ ճչաց, թաքնըվելով մոր ետևում:
Գայլն արդեն կախվել էր զամբիկի կոկորդից, որը ծնկի իջած ուժգին թափահարում էր գլուխը: Երկրորդ գայլը մտրուկի վրա ցատկեց մոր վրայով: Մտրուկը ծառս եղավ հենց այն պահին, երբ մայրն ընկնում էր և պատրաստվեց տափաստան սլանալ: Հանդիպակաց գայլին բախվելով, մտրուկը, առջևի սմբակները թափահարելով, գայլի գլխին դիպավ պատահմամբ: Եվ այդ թույլ հարվածից գայլը ձիու մեջքի վրայով ետ գլորվեց:
Մոլեգնած գիշատիչը, զամբիկի կոկորդից կառչած, արյունոտ աչքերով խեթեց մտրուկին, որը ցնցվեց նրա այդ ահարկու հայացքից և ճչաց նորից, թույլ, աղիողորմ, մորը խնդրելով վեր կենալ:
Եվ զամբիկը վեր ելավ:
Նա այլևս չէր տեսնում իրեն հոշոտող գազանին, չէր զգում մտրուկի ներկայությունն իր կողքին: Ինչ-որ բան ստիպեց նրան վեր կենալ և կանգնել, չընկնելու համար ոտքերը լայնորեն բացած: Սակայն, նորից ընկավ, որովհետև արդեն մեռած էր:
Ընկավ:
Նորից մտրուկը լաց եղավ, բայց մայրն այլևս չէր պատասխանում նրան: Արյունարբու մոլեգնության մեջ, գայլերը պատառոտում էին զամբիկին:
Տափաստանից ահարկու մռնչոց լսվեց, որը նման չէր ձիու ձայնի: Գայլերը, տաք արյունից շշմած, չէին լսում փոթորկաբեր սմբակների դոփյունը, չէին տեսնում թռչող ամպրոպը:
Գայլերի վրա է ընկնում դեղին թաթառը:
Առաջինը մի գայլ ընկավ, որը չէր էլ մասնակցել ձիու սպանությանը և գիշերվա ձանձրալի սպասումից անճոռնացել էր: Սմբակների հարվածից գայլի գանգը ճրթճրթաց:
Երկրորդ գայլը, որը սմբակների կըրկնակի հարվածների տակ էր ընկել, գլուխկոնծի տալով խանդակին հասավ և այլևս դուրս չեկավ:
Դեղին, ահարկու գազանին դիմադրելու ուժ այլևս չունեին գայլերը և գլխապատառ փախան:
Հասնելով մեկին ևս, հովատակը ճզմեց: Իրար կարված մկանների, մազիլների ու ժանիքների վերածված գայլն այդպես էլ մնաց տափաստանում պառկած, ոսկորներով լեցուն մոխրագույն պարկի պես:
Քարարծիվը նկատեց, թե ողջ մնացած երկու գայլերն ինչպես էին սլանում տափաստանով և արհամարհալից սուլոցով վերևից նրանց գլխին աղբ թափեց:
Քարի մոտ վերադառնալով, հովատակը հոտոտեց ձիուն, փնչացրեց ու ետ ընկըրկեց:
Ձին զոհվել էր զավակին պաշտպանելիս:
Հողաթումբ չեն սարքի նրա վրա, երամակը տխուր քայլելով չի անցնի նրա կողքով: Միայն քամին նրա մասունքների վրա կքշի, շաղ կտա երնջակի գլխիկներ:
Հեռու հեռվում երկու կետ նշմարվեցին՝ այստեղ են շտապում հիմա էլ արծվառյուծները:
Հովատակը, գլուխը տմբտմբացնելով, վրնջաց և տափաստանի միջով սլացավ դեպի բլուրները: Նա, առանց ետ նայելու էլ, գիտեր, որ մտրուկը երկարած մի պոչի հեռավորությամբ, վազում է իր ետևից:
Նրանք վարգում էին համահավասար, առանց արագացնելու կամ դանդաղեցնելու վարգը: Սև հովատակը, երկար, ինչպես աշնան գիշերը, երամակի շուրջն էր պտտվում բլուրների ետևում: Եվ երամակի յուր պահապան, խելոք հովվաշները վախենում էին ընկնել նրա սմբակների տակ:
Երամակապանները ծխում էին ու վիճում, թե՝ ո՞ւմ նժույգն է լավը:
Հենց այնտեղ էլ սլանում էին հայր ու որդի՝ Դեղին Սաղիկն ու Օլտին Դիվոնան՝ Ոսկե Խենթուկ մտրուկը:
Ո՞վ գիտե, ինչ-որ ժամանակ գուցե նա՞ դառնա Ոսկե Խենթ անունով Մեծ նժույգը:
Բայց դա այլ ժամանակ կլինի, և պատմվածքն էլ այլ կլինի:

**Թարգմ. Ռ. ԱՂՎԱՆՅԱՆԻ**

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ

ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



ԱՐՏՅՈՄ ՍԱՖԱՐՅԱՆ
№ 143 դպրոցի 3-րդ դասարանի
աշակերտ

## ԳԱՐՈՒՆ

Փակեցեք իմ աչքերը,
Ես կզգամ գարնան գալը:
Կապեցեք ձեռքերս և ոտքերս,
Ես կզգամ գարնան գալը:
Թեկուզ փչի սառը քամին,
Դարձյալ կզգամ գարնան գալը...

●

Հին էր տունը,
Գյուղի տունը:
Մի թոնիր էր,
Փոքրիկ երդիկ,
Ու երդիկում՝
Մի բուռ երկինք,
Դռան ետև մի ավել էր,
Մի մարագ էր ծղոտով լի,
Մի գառնուկ էր, թե գոմում էր...
Էլ ի՞նչ մնաց,
Դու՛ ինձ հուշիր,
Էլ ի՞նչ մնաց,
Որ կոչենք տուն:

●

Դեղին տերև,
Գունատ արև,
Սարից իջնող
Թրջված նախիր,
Քամու հնքից
Հոգնած ճյուղեր,
Ջյունախառը իջնող անձրև...
Դեռ չեմ ասի՝ աշո՜ւն, բարև՜...

●

Ի՞նչ է գոմը,
Թե իմանաս՝
Մի թառ, մսուր,
Պատին քսվող
Մի խոզ, մի դուռ,
Անմեղ մի հորթ,
Ճերմակ մի գառ,
Արև բերող
Մի լուսամուտ,
Պապիս ձեռքին
Մի խուրձ ծղոտ...

## ՈՒԼԻԿ

Ուլի՜կ, գոմում մի՜ աղմկի,
Թող որ քամին մի երգ երգի,
Որ քո սիրտը ուրախանա:

Ուլի՜կ, ո՜ւժ տուր քո ոտքերին,
Լույս՝ աչքերիդ:
Դաշտ ու սարով մտքով անցիր.
Այսօր տաք է, ձյունն է հալվում,
Գարուն կգա...

Աշտարակի շրջանի Օշական գյուղից քիչ հեռու, անտառային պուրակում է տեղավորված մանկական առողջարանը, որտեղ գլխավորապես բուժվում են վնասվածքներ ստացած երեխաները: Քսան տարվա ընթացքում առողջարանում բուժվել են ավելի քան 20 հազար երեխաներ: Շուտով շահագործման կհանձնվի առողջարանի նոր մասնաշենքը, որը հնարավորություն կտա մահճակալների թիվը կրկնապատկել: Այստեղ գործում են քանդակագործության, կտրուձևի, ձեռքի աշխատանքի, նկարչության, երաժշտության, թատերական խմբեր: Առողջարանը ունի 16 հեկտար պտղատու և 3 հեկտար խաղողի այգի, որը տար հնարավորություն է տալիս երեխաներին ապահովել թարմ մրգերով: Առողջարանում բուժվող 1-ից մինչև 7-րդ դասարանցիները իրենց ուսումը շարունակում են Օշականի Մեսրոպ Մաշտոցի անվան միջնակարգ դպրոցում:

**ՄԻՔԱՆՈՍ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**



Ախալքալաքի Դ. Դեմիրճյանի անվան հայկական № 4 միջն. դպրոցում գրքասերների խմբակ կա, որի նախագահը հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Լիլի Բըլըզյանն է:

Խմբակի անդամներից շատերն են ստեղծագործելու փորձեր անում: Խմբակն ունի նաև իր ձեռագիր օրգանը, որը կոչվում է «Հնարագետ



նապաստակ»: «Հնարագետ նապաստակի» հերթական հրատարակած ձեռագիր փոքրիկ գրքերի բովանդակությունները բազմազան են: Մեկում պատմվում է Ջավախքի բընության, մյուսում վերապատմվում է Հայրենական պատերազմի մասնակիցների պատմածները, հաջորդում արշավների ժամանակ պատահած արկածներ են, մեկ ուրիշում՝ մեծերից գրի առած հետաքրքիր պատմություններ և այլն:

Ձեռագիր գրքերի նկարազարդումները կատարում են հենց իրենք՝ երեխաները:

**Մ. ՔԹՐՅԱՆ**

Ջոկատով գնացինք ճամբարից ոչ հեռու գտնըվող լճակում լողանալու: Տեղ հասանք, սկսեցինք լողալ: Եվ հանկարծ լսեցինք Լուսինեի ճիչը: Խեղդվում էր: Գայանեն անմիջապես նետվեց Լուսինեին օգնության: Նա մի ձեռքով այնպես բարձրացրեց Լուսինեին, այնքան վարպետորեն դուրս բերեց, որ չհասկացանք, թե այդ ամենն ինչպես կատարվեց: Վերադառնում էինք ճամբար, բոլորիս մտքի մեջ խեղդվող Լուսինեն ու նրան փրկող Գայանեն էին:

Այդ օրվանից մեր ջոկատի պիոներները ավելի մտերմացան և ավելի լավ ճանաչեցին իրար: Մեկի լավ արարքը տեսնելով, մարդ ինքն էլ է ուզում նմանվել նրան, մի տեսակ փոխվում է: Ինձ թվում է այդ օրը բոլորս էինք փոխվել:

**ԱՐՄԻՆԵ ԴԱԼԼԱՔՅԱՆ**

Օձունի պիոներական ճամբար, 4-րդ ջոկատ

Վերջերս եղանք Հաղպատում: Մեզ մոտ էր եկել Ստեփանավանի իմ ընկերուհին՝ Նաիրան: Բացի մեզնից Հաղպատում կային ուրիշ հյուրեր՝ տարբեր քաղաքներից ու գյուղերից: Էքսկուրսավարը մեզ պատմեց Սայաթ-Նովայի մասին, որ այս վանքում է անցկացրել իր կյանքի վերջին տարիները: Մենք տեսանք Սայաթ-Նովայի մենախուցը, որը ծածկված էր սև շղարշով: Չնայած վանք են այցելում հազարավոր մարդիկ, սակայն այնտեղ տիրում է սքանչելի մաքրություն: Վանքի շուրջբոլորը խորին լռություն էր, որը ակնածանքով էր լցնում մարդկանց սրտերը:

**ՀԵՐՄԻՆԵ ԱԼՋԱՆՋՅԱՆ**
Կիրովական, № 5 դպրոց, 8-րդ դաս.

Հարգելի խմբագրություն, արդյոք ճի՞շտ եմ վարվում, որ չեմ թողնում ինձնից արտագրեն:

**ՆԱՐԻՆԵ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
Աբովյանի № 8 դպրոց, 6-րդ դասարան

Նարինեի այս հարցը խմբագրությունը ուղղում է իր բոլոր ընթերցողներին, թողնելով, որ նրանք մտածեն ու պատասխանն ուղարկեն խմբագրություն և կամ Նարինեին:

«Պիոների» խմբագրությանն են դիմել, հայ հասակակիցների հետ նամակագրական կապեր հաստատելու ցանկություն հայտնելով, ՍՍՀՄ տարբեր հանրապետություններում ապրող հետևյալ դպրոցականները.

УССР 317445,
Кировоградская обл.,
Маловинсковский р-он,
с. Новогрегорьевка,
Клименчук Инне
7-րդ դասարանցի

г. Сухуми, Беслетский с/с,
село Верхняя Бирцха,
ул. Казбеки 27,
Маркарян Светлана
7-րդ դասարանցի

УССР. Хмельницкая обл.
Шепетовский р-он,
с. Четырбоки,
Кучерук Евгения
7-րդ դասարանցի

УССР. 326660,
Херсонская обл.,
п. ч. т. Новотроицкое,
ул. Калинина 23
Кириченко Елена
8-րդ դասարանցի

285326. Ивано-Франковская обл.,
Снятинский район,
с. Джуров (большие горбы).
Глушко Василий
8-րդ դասարանցի

УССР. 317100,
г. Кировоград, Н-Балашовка,
ул. Родниковая 78, кв. 20
Николенко Людмила
8-րդ դասարանցի




Սիրելի ընկերներ.
Ես հավաքում եմ հին, օգտագործված բացիկներ ու ծրարներ, փոստային կնիքներով ու նամականիշերով: Փոխարենը ձեզ կարող եմ ուղարկել տարբեր նամականիշեր և չեխական բացիկներ:

Франтишек Грабал,
Зубека 23/ Дубр.
84101 Братислава 4, ЧССР



# ԳՅՈՒՂԻՑ ԵԿԱՆ ՀՅՈՒՐԵՐ

ՏԱՏՅԱՆԱ ՄԱԿԱՐՈՎԱ

Մեծ արագությամբ տարածվեց ամբողջ
Աշխարհին ի լուր,
Որ այսօր գյուղից Մարկի մոտ եկավ
Շատ կարևոր հյուր
Եվ բերեց իր հետ գյուղական թարմ օդ,
Բերեց գյուղական տաք բուրմունք հացի,
Եվ հացի համեղ բուրմունքից բացի,
Բերեց նաև կով,
Գիտե՞ք ինչպիսի, ոչ թե խենթ մի կով,
Որ չար-չար փնչա ու պոզահարի,
Այլ մարդավարի՝
Խելոք հայացքով, հանդարտ ու բարի:
Կովն էլ բերել է
Իր փոքրիկ որդուն.
Նախշուն, դուրեկան
Սիրունիկ հորթին:
Իսկ  խեղճ  Մարկն  ինքը
Անտեղյակ էր դեռ՝
Նա գյուղի մասին ոչինչ չգիտեր:
Ոչ մի գյուղում նա երբեք չէր եղել,
Առաջին անգամ շնչում էր գյուղի այդ մաքուր օդը,
Տաք բույրը հացի ու ծաղիկների
Ու ոսկի-ոսկի դաշտերի հոտը:
Աչքերը չռած նայում էր անվերջ
Կովին այդ բարի,
Մինչդեռ իր կյանքում նա կարծել էր միշտ,
Թե չարն են բոլոր կովերն աշխարհի,
Հպարտ են ու խիստ:
Նկարներում էր նա տեսել միայն
Կովին ու որդուն,
Գրքերի մեջ էր տեսել նա դեղին
Ու սիրուն հորթին:



ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՏԻԿՆԻԿԸ,

«Ոսկե ձկնիկը»
Պատմեցի ես իմ խելոք տիկնիկին:
Իսկ երբ միասին գնացենք ծովափ,

Եվ Մարկը դարձավ ասաց իր հյուրին.
— Ե՛կ, Ցուրա, հիմա գնանք զբոսնենք,
Քաղաքը տեսնենք:—
Եվ վարպետ հյուրը շատ ուրախացած,
Վեր կացավ տեղից ու Մարկին ասաց.
— Գնանք, ինչ լա՛վ է մեր բախտը բերում,
Գնանք հենց հիմա, էլ չեմ համբերում,
Բայց գնանք չորսով
Ինչո՞ւ երկուսով:
Կովն ու իր հորթը նույնպես թող որ գան,
Նրանք շատ հեռվից ճանապարհ ընկան
Ու սիրով եկան,
Որ այստեղ հասնեն
Ու քաղաք տեսնեն:—
Եվ Մարկը տարավ իր Ցուրի հյուրին
Պողոտաներով մայրաքաղաքի,
Ցուրին էլ տարավ իր հետ իր կովին,
Կովն էլ դուրեկան, սիրունիկ հորթին:
Շատ պտտվեցին ու շատ բան տեսան,
Կենտրոններն ամեն, ծայրամաս հասան:
Մեծ երկնաքերներ տեսան բազմազան,
Թատրոններ, տներ,
Մարմարե սյուներ,
Անթիվ-անքանակ
Փեղկ ու ցուցանակ,
Կամուրջ ու կամար...
Կովը երջանիկ՝ իրիկնադեմին
Կաթ տվեց առատ բոլորի համար:
Մարկը կանչել էր իր ընկերներին՝
Ե՛վ տղաներին, և՛ աղջիկներին:
Բոլորը ուրախ կով-հորթ գովեցին
Ու կաթ խմեցին:
Բայց հո չէր գրկել կովը իր հորթին,
Իր դեղին սիրուն երջանիկ որդուն,
Որի հետ բերեց տաք բույրը հացի
Ու, հացից բացի,
Լուռ հովիտների զո՛վ, մաքուր օդը
Եվ հազար գույնի թարմ ծաղիկների
Ու ոսկի-ոսկի դաշտերի հոտը:

**Թարգմ. ՄԱՐՈ ՄԱՐԳԱՐՅԱՆԻ**




Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ես դուրս կանչեցի Ոսկե ձկնիկին:
Կարծում եք չեկա՞վ, եկավ և այսպես
Կլոր աչքերը պտտեց վրաս.
— Լսում եմ,— ասաց:
— Բարև՛,— ասում եմ,— չէի հավատում,
Մտածում էի,
Որ դուք ապրում եք միայն հեքիաթում:
— Ի՞նչ եք ցանկանում,— ձկնիկն հարցրեց:
— Ես... Ես ի՞նչ ասեմ, ո՞ր մեկը ասեմ:
— Լա՛վ, դու մտածի՛ր,—
Ասաց ձկնիկն ու ետ ծովը սուզվեց:
Նայում ենք իրար ես ու տիկնիկը,
Ափսո՛ս, էլ չի գա Ոսկե ձկնիկը:
— Ինչու՞ չասացիր, թե ինչ ենք ուզում,—
Բարկանում եմ ես տիկնիկիս վրա
Եվ հանկարծ հիշում,
Չէ՞ որ տիկնիկս խոսել չգիտի:
Ու ես ձկնիկին կանչում եմ նորից:
— Լսում եմ,— արագ ձկնիկն հայտնվեց:
Ու ես խնդրեցի.
— Ես ուզում եմ, որ տիկնիկն իմ խոսի:
— Թող այդպես լինի,—
Ասաց ձկնիկը և անհետացավ:
— Շնորհակալ եմ,—
Հանկարծ տիկնիկս խոսեց բարձրաձայն:
Շատ ուրախացավ փոքրիկ աղջիկը,
Այնքան շատ, որ էլ դրանից հետո
Չէր լռում ինքը,
Չթողեց անգամ, որ մի բան ասի
Խոսել սովորած իր լավ տիկնիկը:
Իսկ վերջում ասաց.
— Տես, շատ չխոսես,
Եթե շատ խոսես, պիտի իմանաս,
Ոսկե ձկնիկին էլի կխնդրեմ,
Որ նորից խոսել չկարողանաս:



Լ. ԿԱԼԻՆԻՆԱ

«Ժենյան մահացել է 1941 թ. դեկտեմբերի 28-ի առավոտյան ժամը 12.30-ին:

Տատիկը մահացել է 1942 թ. հունվարի 25-ի ցերեկվա ժամը 3-ին:

Լեոկան մահացել է 1942 թ. մարտի 17-ի առավոտյան ժամը 5-ին:

Քեռի Վասյան մահացավ 1942 թ. ապրիլի 13-ին գիշերվա ժամը 2-ին:

Քեռի Լյոշան՝ 1942 թ. մայիսի 10-ի ցերեկվա ժամը 4-ին:

Մայրիկը՝ 1942 թ. մայիսի 13-ի առավոտյան ժամը 7.30-ին:

Սավիչևները մահացան: Բոլորը մահացան»:

Այս տողերը լենինգրադցի Տանյա Սավիչևայի օրագրից են:

Տանյա Սավիչևային այժմ գիտե ամբողջ աշխարհը: Հայրենական մեծ պատերազմի տարիներին նրա ճակատագիրը դարձավ լենինգրադցիների տառապանքների և հերոսական տոկունության խորհրդանիշ: Նյուրնբերգյան դատավարության ժամանակ նրա օրագիրը մերկացնող փաստաթուղթ էր ընդդեմ ֆաշիզմի:

Պոնետաևկա գյուղի երեխաները պատահմամբ իմացան, որ Տանյա Սավիչևային մանկատան երեխաների հետ միասին բլոկադայի ժամանակ Լենինգրադից տեղափոխել են Գորկու մարզ: Իսկ ամբողջ գյուղը գիտե, որ պատերազմի տարիներին հին առանձնատանը Լենինգրադից եկած երեխաներ են ապրել: Գուցե Տանյա՞ն էլ է ապրել այստեղ և սովորել մեր դպրոցում:

— Հարկավոր է Օլգա Պետրովնա Վերեբինային հարցնել, նա պատերազմի ժամանակ աշխատել է դպրոցում,— հուշեցին երեխաներին: Այսպես սկսվեցին որոնումները:

## ՊԱՏՄՈՒՄ Է ՕԼԳԱ ՊԵՏՐՈՎՆԱՆ

Կայարանից վիրավորներին բերում էին ձիերով: Մանկատունն էլ, հոսպիտալն էլ տեղավորվել էին այս շենքում: Սպաներից մեկը վիրավոր էր գլխից: Նա կանչեց ինձ և ասաց.

— Ներեցեք, ձեզ գործից կտրեցի: Ես էլ գրականության դասատու եմ: Ընտանիքս ու աշակերտներս Սմոլենսկի մարզում են: Նրանց մասին ոչինչ չգիտեմ: Ես այգում գրքեր ու նկարներ եմ հորել-թաքցրել:

Նա սկսեց զառանցել, հետո վեր կացավ, կարծես մարտի էր նետվում, նորից ընկավ բարձի վրա, զառանցանքի մեջ բանաստեղծություններ էր արտասանում: Նրա անունը Պավել Ալեքսանդրովիչ Շչուկին էր: Ես դասարանի երեխաներին բերեցի հիվանդասենյակ: Վիրավոր ուսուցիչն անցկացրեց իր առաջին դասը «Եվգենի Օնեգինից»:

Հիշում եմ, աշակերտներս լուռ վերադառնում էին հոսպիտալից: Հանկարծ մեկն ասաց.

— Եկեք գտնենք նրա ընտանիքը, աշակերտներին: Ազնիվ խոսք, այդ դեպքում Պավել Ալեքսանդրովիչը ոտքի կկանգնի:

Ահա թե երբ ծնվեց «Որոնողներ» ջոկատը:

Նրանք գտան սմոլենսկցի ուսուցչի կնոջն ու փոքրիկ աղջկան, ինչպես նաև նրա աշակերտուհի Զինային: Միասին կարդում էին պարտիզանական ջոկատից գրված Զինայի նամակները:

Ուսուցիչը մահացավ:

Պատերազմի տարիներին իմ դասարանում սովորում էին ոչ միայն գյուղի երեխաները, այլև Լենինգրադից եկածները: Մանկատան հինգերորդ մասնաշենքի մոտ նրանք տնկել և խնամում էին տասը կեչի:

Գյուղի երեխաները եկան տեսան, թե ինչպես են ապրում լենինգրադցիները ու սկսեցին օգնել նրանց:

Վասյա Դուռնայկինը առաջինն օրինակ ծառայեց: Ամեն առավոտ, դասերն սկսվելուց առաջ նա գալիս էր մանկատուն՝ Կոլյա Եգորովի ետևից, նրան նստեցնում էր իր ուսերին և տանում դպրոց: Որով-

հետև Կոլյան ոտքեր չուներ: Կոլյան հաջողությամբ ավարտեց տասնամյակը, հրաժարվեց թոշակից, սովորեց ու դարձավ հաշվապահ և այժմ աշխատում է մեր մարզում: Մանկատան մյուս սաներից Միշա Տիխոմիրովը ուսուցիչ դարձավ, Սաշա Բոյանովը՝ բայանիստ: Նրանք աշխատում են Պոչինկովսկի շրջանում:

Դպրոցում Տանյա Սավիչևա չկար, հաստատ չկար: Գուցե տարեց կոլտնտեսուհիներից որևէ մեկը կհիշի:

— Պունտիկովների տանը լենինգրադցի մի աղջիկ կար,— գլխի գցեց Օլգա Պետրովնան:

Ջոկատը բաժանվեց օղակների: Գնացին հնաբնակների մոտ: Սեպտեմբերյան տաք օրեր էին: Մագուրինա տատի հոգսերը շատ էին. առավոտից բանջարանոցում էր, ուժն էլ արդեն չահել ժամանակվանը չէր: Հանկարծ, չգիտես որտեղից, տասը աշխույժ երեխաներ օգնության հասան: Երեկոյան թեյի ժամանակ ծեր կոլտնտեսուհին պատմեց, թե կանայք ու երեխաները ինչպես էին աշխատում պատերազմի տարիներին, եզներով վար անում, խուրձ կապում, քնում ուղղակի դաշտում, խոնավ գետնահորերում: Իսկ Տանյային տատը չգիտեր:

Նույն օրը երեկոյան Յուրա Ֆրոլովը զգուշորեն բացեց իր հարևան կենսաթոշակառու Եկատերինա Կոնդրատևնա Ռիժոնկովայի պարտեզի դռնակը և հարցրեց Տանյայի մասին: Հետո նա տեսավ, որ միաժամանակ կնոջ համար դժվար է վարել տնտեսությունը և ջրհորից ամբողջ մի տակառ ջուր բերեց, քաղհանեց մարգերը: Ամեն առավոտ նրա համար խանութից հաց էր բերում:

Երեխաներն իմացան, որ իրենց գյուղի շատ տներում էվակուացված լենինգրադցիներ են ապրել: Ամեն առավոտ կոլտնտեսուհիները մանկատուն են բերել թարմ կաթ, ձու, կարտոֆիլ:

Տանյա Սավիչևային ոչ ոք չէր հիշում:

Որոշեցին գնալ հարևան գյուղը՝ Կրասնի Բոր, որը 25 կիլոմետր հեռու էր Պոնետաևկայից: Այնտեղ էլ Լենինգրադից եկած երեխաներ են ապրել:

## ԿՐԱՍՆԻ ԲՈՐՈՒՄ

Եվ ահա Պոնետաևկայի դպրոցականները Կրասնի Բորում են, Նաստյա տատի տանը: Ծունչները պահած լսում են, թե ինչպես երեխաներով լի գնացքն ընկավ ռմբակոծման տակ, հրաշքով ճեղքեց անցավ կրակի գիծը և 1942 թվականի օգոստոսին Լենինգրադի № 48 մանկատան երեխաները հասան Կրասնի Բոր գյուղը:

Սկսվեց իրարանցումը. ինչպե՞ս տեղավորել ու կերակրել երեխաներին:

Լքված խրճիթը մեկ օրում վերասարքավորեցին և դարձրին բաղնիք ու լվացքատուն: Ելխովյա գյուղի ծերունիները շտապով տաշտեր և կիսատակառներ պատրաստեցին:

Սակայն երեխաները նույնիսկ ինքնուրույն շարժվել չէին կարողանում: Առաջին անգամ նրանց բաղնիք տարան ծածկոցներով: Բուժքույր Նինա Միխայլովնան ամբողջ գյուղին տարավ անտառ մասուր հավաքելու, որից վիտամինի մածուկ էին պատրաստում:

Կոմերիտուհի Նաստյա Զնատնինային տվել էին մանկատան 12—16 տարեկան աղջիկների ավագ խումբը: Նրա խմբում կար Տանյա անունով մի աղջնակ, որին սիրում էին բոլորը: Անաստասիա Գրիգորևնան այսպես էր նկարագրում Տանյային. «Բարձրահասակ էր, նիհար, երկարուկ դեմքով, խիտ, շեկ մազերով, գորշ երկնագույն աչքեր ուներ, քնքուշ, մի փոքր թախծալի ժպիտ: Առողջական վիճակը վատ էր»:

## ՏԱՆՅԱ

— Տա՛նեչկա, մեր գյուղից ոչ ոք Լենինգրադում չի եղել: Կառոչանաս, պատերազմն էլ կավարտվի, միասին կգնանք: Ինձ հյուր կտանես: Կգտնե՞ս ձեր փողոցը, տունը, Տա՛նեչկա:

— Ես հարազատներ չունեմ, մեզ ոչ ոք չի դիմավորի:

— Այդ մասին պետք չէ, աղջիկս: Նե՛ր կարկանդակը՝ քանի տաք է: Ահա գետնամորը: Մեր գյուղի փոքրիկ սաղաներն են բերել:

Սակայն Տանյայի առողջական վիճակը չէր բարելավվում:

Բուժքույր Նինա Միխայլովնան Տանյային նստեցրեց մանկատան Զադաչկա ձիու վրա ու տարավ Պոնետաևկայում գտնվող հաշմանդամների տունը: Քսանհինգ կիլոմետր է մինչև Պոնետաևկա:

Իսկ Տանյան չէր առողջանում: Ահա նա կանգնած է դարպասի մոտ, ծաղկավոր խալաթը հագին: Այդպես էլ մնացել է նա իմ հիշողության մեջ:

140 ուժասպառ, վիրավոր լենինգրադցի երեխաներից Կրասնի Բորին չհաջողվեց ոտքի կանգնեցնել միայն նրան:

# ՓՆՏՐՈՒՄ ԵՆՔ ԵՎ ԳՏՆՈՒՄ

Տան ճանապարհին որոնողները որոշեցին ուսումնասիրել պոնետանյան նախկին մանկատան բոլոր արխիվային փաստաթղթերը:

Մութ պահասենյակ: Դեղնած թղթերի բարալիկ թղթապանակ: Ինչ-որ մեկը նրվաղած ձայնով ասաց. «Անձնական գործ № 293... Սավիչևա Տատյանա Նիկոլաևնա»:

Առաջին էջում. «Եկել է 1944 թ. մայիսի 7-ին, մեկնել 1945 թ.»: Ու՞ր է մեկնել:

Ահա մանկատան երեխաների գրանցման գրքերը: Ինչպե՞ս է պատահել, որ առաջ դրա վրա ուշադրություն չեն դարձրել: Սավիչևայի ազգանվան դիմաց գրված էր. «Մեկնել է 1944 թ. մայիսի 23-ին Շատկիի հիվանդանոց»:

Հաջորդ օրը դասերից հետո Օլգա Պետրովնան և Վալյա Պաուտովան գնացին Շատկի:

Իսկ հետո նրանք նստած էին հիվանդանոցի նախկին հիվանդապահ Աննա Միխայլովնա Ժուրկինայի փոքրիկ փայտե տնակում և մուրաբայով թեյ էին խմում:

— Այդ աղջիկն այժմ էլ աչքերիս առաջ է, խելոք ու բարի: Նրա առողջական վիճակը շատ ծանր էր, համարյա ոտքի չէր կանգնում,— պատմում է Աննա Միխայլովնան:

— Իսկ որտե՞ղ է գերեզմանը, չե՞ք հիշում,— դուրս թռավ Վալյայի շուրթերից:

Կինը մտածեց.

— Տեղը կարող եմ հիշել: Հին կեչու մոտ է...

Ամեն գարնանը, մայիսին, փողոցում պարզորոշ լսվում է թմբուկների ձայնը, պիոներների տոնական շարքերը գնում են հուշարձանի մոտ՝ Տանյայի հետ հանդիպման: Դրոշներն իջեցված են, գլուխները խոնարհ, թեթև քամին այեկոծում է կարմիր փողկապները:'Բարև', Տա'նյա:

140 ուժասպառ, վիրավոր լենինգրադցի երեխաներ բերեցին Կրասնի Բոր: Ամբողջ գյուղը խնամում էր նրանց: Նրանցից 139 ապրեցին: Մահացավ միայն Տանյան:

**Թարգմ. Ա. ՄԵԼՔՈՆՅԱՆԻ**





# Նախանձե՞լ եմ, և կամ նախանձո՞ւմ եմ...

**Երևանի № 80 դպրոցի աշակերտների շարադրություններից**



Ֆիզկուլտուրայի ժամին՝ բարձրացատկի ժամանակ ուսուցիչն հայտնեց, որ մյուս դասարանում ամենաբարձր արդյունքը եղավ 1 մ 30 սմ: Թռիչքի ժամանակ իմ ընկերները ինձանից բարձր թռան: Ես նախանձեցի նրանց ու միաժամանակ մտածեցի, որ ընկերներիս բարձր ցուցանիշները մեր դասարանի պատիվն են բարձրացնում: Ինձ էլ գուցե նախանձում են դասարանում ինձանից ետ մնացողները և ուզում են հասնել ինձ, բայց չեն կարողանում:

Ես նախանձում եմ իմ դասընկերուհուն: Ես նրան նախանձում եմ նրա լավ, մաքուր սրտի համար: Նաև սիրում եմ նրան և ցանկանում եմ, որ նա լինի միշտ ինձ հետ, իմ կողքին: Իսկ ինձ նախանձող կա թե ոչ, չգիտեմ: Գուցե և կա: Միշտ լավից լավը կա, վատից էլ՝ վատը:

●

Ես նախանձել եմ իմ ընկերուհուն: Նա ինձանից աշխատասեր էր ու միշտ պատրաստ օգնելու ում ինչով կարող էր: Իսկ հիմա ես նրան չեմ նախանձում, որովհետև արդեն վարվում եմ իր պես:

●

Նախանձր մի զգացում է, որը ծնվում է թե՛ բարությունից և թե՛ չարությունից: Այդ պատճառով էլ երկու տեսակ է լինում՝ չար և բարի:

Եթե ես մեկին նախանձում եմ, չեմ ցանկանում, որ նա ընկնի իր բարձրությունից, այլ ուզում եմ, որ ես հասնեմ նրան:

Իմ կարծիքով, բարի նախանձը հենց այս է, որը մարդուն բարձրացնում է:

●

Բարի նախանձով նախանձում են միայն լավին, գեղեցիկին, որովհետև այն հագեցած է սիրով:

Ես ոչ մեկին չեմ նախանձել, որովհետև անում եմ այն ամենը, ինչ որ լավ է ու գեղեցիկ, փորձում եմ այնպես ապրել, որ միայն ինձնով չհրապուրվեմ և ուրախանամ, այլ ուրախանան իմ ընկերներն ու ծնողները, բարեկամներն ու հարազատները: Իմ կարծիքով ինձ նախանձողներ չկան, որովհետև իմ մեջ ոչինչ չկա նախանձի արժան...

●

Իմ շրջապա[illegible]մ կան մարդիկ, որ կարողության տե[illegible]են, ապրում են ուռճացած և իրենց [illegible]արում ամենքից բարձր: Մի՞թե ես ինձ [illegible]յ կտամ նախանձել նրանց, սահմա[illegible]իակ, նեղ և արտաքինից միայն ուրւ[illegible] թվացող նրանց կյանքին: Նրանց ն[illegible]ոմամբ զգացածս ավելի՛ շատ քամահր[illegible]նք է:

Ես շրջապատ[illegible]ած եմ նաև շատ լավ, բարի, հոգատա[illegible] մարդկանցով (բարեբախտաբար նրանք ավելի մեծ տոկոս են կազմում իմ շրջապատում): Նրանց հանդեպ լցված եմ մեծ սիրով ու հարգանքով: Եվ մի՞թե երբևէ ես կարող եմ նրանց հաջողությունների վրա ուրախանալու փոխարեն նախանձել:

ՄԻՔԱՅԵԼ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ԹԻԹԵՌԸ

Թիթեռը իր աչքը բացեց.
Ծաղկող դաշտում երգ էր, խաղիկ:
Ինքն էլ թռավ, բայց ո՞վ քաղեց
Առավոտը— ճերմակ ծաղիկ:

Զեփյուռի մեղմ մատների մեջ
Զնգում էին խոտ ու շաղիկ:
Ինքն էլ պարեց, բայց ո՞վ քաղեց
Ցերեկը— վառ, կարմիր ծաղիկ:

Առէջքներում անուշ քնեց,
Վերմակը՝ շող, շուրջը՝ շաղիկ:
Լավ էր. անհոգ, բայց ո՞վ քաղեց
Իրիկունը— կապույտ ծաղիկ:

Եվ թիթեռը շատ զարմացավ,
Երբ որ դարձան թևերը թույլ,
Չէ, ծաղիկ չէր, օրը անցավ,
Ինքն ի՞նչ արեց... Ապրեց իզու՞ր...

# ՎԱՂԱ



ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

«Երևանից Էջմիածին տասնվեց վերստ ճանապարհն անցնում է շիկացած տեղանքով, որ թվում է, պետք է լինի Ասիայի ու Աֆրիկայի հեռավոր անապատների ինչ-որ նախադուռ: Էջմիածին չհասած՝ անցնում ես հսկայական ավերակների մոտից: Դա ամենակախարդիչ պեղումներից մեկն է, որպիսին երբևիցե ես տեսել եմ մինչև այժմ»,— 1924 թվ. գրել է Անատոլի Լունաչարսկին: Բայց իսկական պեղումները սկսվեցին երկու տարի անց՝ Թ. Թորամանյանի, Ա. Քալանթարի և Ս. Տեր-Հակոբյանի ղեկավարությամբ: Մինչ այդ, շինարարական և այգեգործական աշխատանքների ընթացքում պատահականորեն գտնվել էին հնագիտական արժեք ունեցող նյութեր ու արձանագրություններ: Չորս-հինգ տարվա ընթացքում բացվեցին մի շարք դամբարաններ:

Հին Վաղարշապատի տեղադրության հարցին պատասխանեցին 1931 թվ. պեղումները, որոնք ապացուցեցին, որ քաղաքը եղել է ներկայիս Էջմիածնի տեղում: Հետագա ուսումնասիրություններից հատկապես արժեքավոր էին 1959 թ. ճարտարապետ Ալ. Սահինյանի՝ մայր տաճարի և Հռիփսիմեի որմնամույթերի հիմքերի պեղումները: Եվ այսօր, գրավոր աղբյուրներն ու պեղումների նյութերը հնարավորություն են տալիս՝ ուրվագծել քաղաքի պատմությունը:

Վաղարշապատի տարածքում բնակավայր է եղել դեռևս քարի դարում: Հազարամյակներ անց այդտեղ հայոց Երվանդ Սակավակյաց (մ. թ. ա. 570—560) արքայի փեսա Վարդգես Մանուկը հիմնում է Վարդգեսավանը: Տիգրան Մեծն այդ ավանում բնակեց-



# ՐՇԱՊԱՏ

նելով գերեվարած հրեաների մի մասին, այն դարձնում է շուկա ունեցող գյուղաքաղաք:

Երկրի զարգացումն ու միջազգային առևտրի ավելի աշխուժացումը նոր քաղաքների հիմնադրման հնարավորություն են ստեղծում: Հայոց Վաղարշ Առաջին (117—140 թթ.) թագավորը պարսպապատելով Վարդգեսավանը, այն վերանվանում է Վաղարշապատ և դարձնում իր արքայանիստն ու երկրի վեցերորդ մայրաքաղաքը: Սակայն ինչպես նախկինում, այնպես էլ հետագայում, Արտաշատը մնում էր երկրի խոշորագույն քաղաքը:

163 թվ. Վաղարշապատը երկրորդ անգամ հռչակվեց մայրաքաղաք: Իսկ մինչ այդ հռոմեացիները փորձել էին նվաճել Հայաստանն ու դարձել Հռոմի պրովինցիա: Բայց Տրդատ նախարարի գլխավորությամբ համաժողովրդական ապստամբություն էր բարձրացել և այդ թոհուբոհի մեջ քիչ էր մնացել Տրդատի ձեռքով սպանվեր հռոմեական կայսր և զորավար Մարտիոս Վերոսը: Չընայած ապստամբությունը ճնշվեց և Տրդատը աքսորվեց Բրիտանիա, բայց վերականգնվեց Հայաստանի անկախությունը: Եվ Վաղարշապատը Կայնեպոլիս (Նոր քաղաք) անունով, այս անգամ հռոմեացիների կողմից հռչակվեց Հայաստանի մայրաքաղաք: Հռոմեացիները իրենց լեգեոնների մի մասը թողնելով Վաղարշապատում, հեռանում են: Չանցած երեք տարի Հարավային Միջագետքից եկած հռոմեացի զինվորները ժանտախտ տարածեցին ոչ միայն Վաղարշապատում, այլև Առաջավոր Ասիայում ու Եվրոպայում: Վաղարշապատի բնակչության մեծ մասը այդ ժանտախտին զոհ գնաց: Շուտով հռոմեական կայսրության մեջ տեղի ունեցող գահակալական կռիվների ժամանակ Վաղարշապատից վռնդվեցին հռոմեական լեգեոնները: Մինչ այդ նրանք մի շարք կառուցումներ էին կատարել, իրենց ապահովության համար ամրացրել քաղաքի պարիսպները:

Իսկ ինչպիսի՞ն էր Վաղարշապատի քաղաքաշինական պատկերը. միջնաբերդը մոտավորապես զբաղեցնում էր այժմյան Էջմիածնի վանքի պարսպապատ տարածքը: Այնտեղ էին թագավորի պալատը, Անահիտ-Արտեմիսի տաճարը, պետական-հասարակական նշանակության շենքերը, բանտը, զորանոցները, բաղնիքը և այլն: Արհեստավորական թաղամասերը տարածված էին միջնաբերդի շուրջը, այսինքն այնտեղ, ուր այժմ Էջմիածին քաղաքն է:

Քանի որ Վաղարշապատը տեղադրված էր դաշտավայրում և զուրկ էր պաշտպանողական բնական առավելություններից, ապա ենթադրելի է, որ ինչպես ժամանակին Միջագետքի և Արևմտյան Իրանի քաղաքները, նա ևս ուներ կլորավուն հատակագիծ: Քաղաքն ուներ հզոր աշտարակներով պարիսպներ: Վաղարշապատը հարավից պաշտպանված էր նաև Քասաղի ջրով լցվող և Պառկենփոս կոչվող խոր խրամատով, հարավարևմուտքից ընդարձակ նահիճով, որտեղ էլ կատարվում էին մահապատիժները: Պարիսպներից դուրս գտնվում էին քաղաքի գերեզմանոցը՝ հին դամբանադաշտը, անտիկ տաճարը և որոշ արհեստանոցներ:







Տաճարը, ըստ երևույթին, նվիրված էր արևի աստված Միհրին և գտնվում էր Հռիփսիմեի տեղում:

Վաղարշապատի նշանակությունը մեծացավ հատկապես քրիստոնեությունը պետական կրոն հռչակելուց (301 թ.) հետո: Կործանելով Սանդարամետի մեհյանը, նոր կրոնի նվիրյալները նրա տեղում կառուցեցին կաթողիկե եկեղեցին՝ Հայաստանի քրիստոնեական անդրանիկ մայր տաճար սբ. Էջմիածինը:

Ի դեպ, հենց այս տաճարի անունով էլ, հետագայում, հատկապես 13—15-րդ դարերից սկսած, քաղաքը կոչվեց Էջմիածին: Հայաստանում քրիստոնեական կրոնի գլխավոր կենտրոնը լինելու շնորհիվ Վաղարշապատը դարեր շարունակ երկրի համար ուներ հոգևոր-մշակութային խոշոր նշանակություն: Հայոց գրերի գյուտից հետո 405 թվ. Վաղարշապատ է վերադառնում Մեսրոպ Մաշտոցը, որտեղ նրան ցնծալից ընդունելություն էր սպասվում: Ահա, թե ինչպես է նկարագրում դեպքերի ականատես պատմիչ Կորյունը. «Եվ արդ, երբ հիշելին եկավ, մոտեցավ թագավորական քաղաքին, իմաց տվեցին թագավորին և սուրբ եպիսկոպոսին:



Նրանք նախարարագունդ ավագանու բոլոր բազմությունն առնելով՝ քաղաքից դուրս եկան, Ռահ գետի ափին դիմավորեցին երանելիին: Եվ ցանկալի ողջույնը միմյանց տալուց հետո՝ այնտեղից ցնծության ձայներով և հոգևոր երգերով ու բարձրաձայն օրհնություններով ետ դարձան քաղաքը և տոնական ուրախությամբ անցկացրին օրերը»:

Մեսրոպ Մաշտոցը և Սահակ Պարթևը հենց Վաղարշապատում էլ հիմնեցին հայոց մեսրոպատառ առաջին դպրոցը:

Մեր առաջին մատենադարանը ևս այստեղ է հիմնվել, երբ 486—491 թվականներին վանքի հոգաբարձուն Ղազար Փարպեցին էր:

Յոթերորդ դարը նշանավոր էր ոչ միայն քաղաքի, այլև հայ ճարտարապետության պատմության համար. 618-ին կառուցվեց Հռիփսիմեի տաճարը, 630-ին՝ Գայանե եկեղեցին, 641—661-ին՝ Զվարթնոցը:

Վաղարշապատը վաճառաշահ քաղաք էր, բարձր զարգացման հասած արհեստներով ու արվեստներով: Հատկապես նշանավոր էին նրա դարբինները ու ոսկերիչները, զինագործները ու խեցեգործները: Ինչպես իր ժամանակի մյուս քաղաքներում, այստեղ

եւ բացի զուտ քաղաքային զբաղմունքներից, բնակչությունը շարունակում էր երկրագործությունը ու այգեգործությունը, խաղողագործությունն ու գինեգործությունը:

Չորրորդ դարի վերջերին տեղի ունեցած պարսից Շապուհ 2-րդի զորքերի արշավանքների մասին այսպես է պատմում Փավըստոս Բուզանդը. «Գրավեցին Վաղարշապատ քաղաքն էլ. քանդում, քրում, հիմքից կործանում էին. այս քաղաքից էլ գերի տարան տասնինը հազար տուն: Ամբողջ քաղաքում չենք չթողեցին, բոլորը քարուքանդ արին, կործանեցին: Ասպատակներ ուղարկելով՝ բոլոր չափահաս մարդկանց կոտորում էին, կանանց, երեխաներին գերի էին վերցնում»:

Վաղարշապատի ու նրա բնակիչների դժբախտությունները սրանով չվերջացան: Արաբական տիրապետության շրջանում քանիցս քաղաքը ավերվեց, բայց Բագրատունյաց Հայոց թագավորության հաստատումից հետո այն կրկին առաջընթաց ապրեց: Բայց այս անգամ էլ արևելքից եկան սելջուկները, մոնղոլները, թաթարներն ու վաչկատուն այլ ցեղերը, ամայացրին երկիրն ու նրա քաղաքները:

Վաղարշապատի դերը մեր ժողովրդի քաղաքական և հոգևոր կյանքում կրկին բարձրացավ, երբ այնտեղ 1441-ին վերահաստատվեց Հայոց կաթողիկոսարանը, որը 1105-ից գտնվում էր Կիլիկիայում: Դրանից շուրջ տասը տարի առաջ՝ 1332-ին Սյունյաց իշխան Ռուստամ Օրբելյանը Էջմիածնի վանքին էր նվիրել 7 գյուղ՝ կաթողիկոսարանի ծախսերը հոգալու համար: Իսկ Գրիգոր Ջալալյանցը (1443—65) գնելով Վաղարշապատը, այն դարձրեց վանքապատկան, և այդպիսին էլ մնաց մինչև Հայաստանում սովետական իշխանության հաստատումը՝ 1920 թվ.:

Հայ առաջին տպագիր գրքի հրատարակությունից ուղիղ 260 տարի անց Էջմիածնում, Սիմեոն Երևանցու հիմնադրած տպարանում տպագրվում է Հայաստանի առաջին տպագիր գիրքը: Իսկ չորս տարի անց՝ 1776-ին հիմնադրվում է նաև թղթի առաջին գործարանը:

Ինչպես ողջ Արևելյան Հայաստանի, այնպես էլ Վաղարշապատի համար բախտորոշ էր 1828-ին Ռուսաստանի կազմի մեջ մտնելը:

Ողջ 19-րդ դարի ընթացքում Էջմիածինը տնտեսական և մշակութային զարգացում ապրեց: 1868-ին լույս տեսավ Հայաստանի առաջին պարբերականը՝ «Արարատը», հաջորդ տարին հիմնադրվեց Էջմիածնի թանգարանը, իսկ Մկրտիչ Խրիմյանի (1892—1907) օրոք, նույնիսկ վանքում անցկացվեց էլեկտրականություն: Առաջին աշխարհամարտի տարիներին Էջմիածնում ծովացել էր Արևմտյան Հայաստանի գաղթականությունը և նրա պատերի տակ ամեն օր հարյուրավոր երեխաներ էին սովից ու հիվանդություններից մահանում: Սովետական իշխանությունը ոչ միայն հոգաց բազմահազար գաղթական որբերի ու սովյալների կարիքները, այլև ուժերի գերագույն լարումով վերականգնեց ավերված երկիրը: Անցած տասնամյակների ընթացքում գավառական խղճուկ քաղաքից Էջմիածինը վերածվեց ժամանակակից արդյունաբերական ու մշակութային կենտրոնի, 1909 թվ. նա ուներ 8422, այսօր ունի շուրջ 45 հազար բնակչություն: Հայաստանի կառավարությունն ամեն տարի մեծ հատկացումներ է անում Վաղարշապատի ճարտարապետական հուշարձանների պահպանության համար, շուրջ 240 հեկտար տարածություն հայտարարված է պատմաճարտարապետական արգելոց:









# ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ—70

Մկրտիչ Կորյունի բանաստեղծությունները դպրոցականներին ծանոթ են դասագրքերից: Նա իր փոքրահասակ բարեկամների համար բանաստեղծություններից բացի գրում է նաև հեքիաթներ, առակներ, հանելուկներ և պիեսներ, կատարում թարգմանություններ: Իսկ նրա «Կամո» պատմահեղափոխական վեպը պատանիների սիրած գրքերից է:

Մկրտիչ Կորյունի բազմաթիվ բանաստեղծություններ և առակներ, պիեսներից «Չարիկն ու Քաջարիկը», «Աղավնին ու տղան», «Անմահական խնձորը» թարգմանվել են Սովետական Միության այլ ժողովուրդների լեզուներով:

«Պիոներ» ամսագրի խմբագրությունը իր բազմահազար ընթերցողների անունից շնորհավորում է հոբելյարին, ցանկանալով նրան ստեղծագործական երկար տարիների կյանք:

## ՆԿԱՐԵԼ ԵՄ ԱՀԱ ՏԵՍ...

Ես գույներով իմ պես-պես
Նկարել եմ ահա տես՝
Մայիսմեկյան առավոտ,
Կապույտ երկինք, մաքուր օդ,
Արև, արև, երգ ու խաղ,
Ծիլ ու ծաղիկ ոսկեշաղ,
Այս էլ Մասիսն ալեզարդ,
Պապիկիս պես հարազատ:
Փողոցն ահա՝ ծաղկանց ծով,
Լեցուն ուրախ մարդկանցով,
Երեխաներ շարք առ շարք,
Թաթիկներում՝ դրոշակ,
Սակայն հաջող բոլորից
Նկարել եմ ահա ինձ,
Գնում եմ երգն իմ շրթին
Մայիսմեկյան շքերթին:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ԵՐԵՔ ԹԱԳԱՎՈՐ ԵՎ ՄԵԿ ՆԱՎԱՎԱՐ

(Ախալցխայի բանահյուսությունից)

Մի թագավոր նավակով ծով է դուրս գալիս: Ափից հեռացած-չհեռացած, այնպիսի փոթորիկ է բարձրանում, որ ոչ լեզվով է հնարավոր պատմել, ոչ գրչով գրել: Թագավորը, որի կյանքը մազից էր կախված, հրամայում է նավավարին.

Նավը այնպես տար,
Նավը այնպես տար,
Որ իմ պալատն ինձ
Հասցնես անվթար...

Իր գործին գիտակ, հմուտ և սառնասիրտ նավավարը չլսելու է տալիս թագավորի ասածը: Նա լավ գիտեր, որ թագավորը գիտի հրաման տալ, իսկ նավ վարել չգիտի: Թագավորն ավելի կատաղած, քան ծովն ու փոթորիկը, նորից է ձայնում.

Նավը այնպես տար,
Նավը այնպես տար,
Որ իմ պալատն ինձ
Հասցնես անվթար...

— Թագավորն ապրած կենա,— խոսում է նավավարը,— այստեղ երեք թագավոր կա, ես որի՞ն լսեմ:

Թագավորը զարմացած շուրջն է նայում: Չորս կողմը ալեկոծված ծովն է:

— Չէ՞ որ ծովի վրա միայն ես էի, ի՞նչ երեք թագավորի մասին էիր խոսում,— երբ վերջապես ափ են իջնում, հարցնում է նա:

— Թագավորն ապրած կենա,— ասում է նավավարը,— թագավորներից մեկը ալեկոծված ծովն էր, մյուսը՝ դու, ծովից ու փոթորկից ոչ պակաս մոլեգնած:

— Իսկ ո՞վ էր երրորդ թագավորը:

— Երրորդ թագավորը ես էի: Իր գործի մեջ հմուտ մարդը իր գործի թագավորն է:

Թագավորը առատ-առատ վարձատրում է նավավարին նավը հմտությամբ ափ հանելու և խելացի պատասխանի համար:



Մի օր հարևան սենյակից լսեցի տատիս տրտունջը.

— Ա՛յ Սողոմոն,— դիմեց նա հորս,— այդ որբին ինչո՞ւ բերեցիր, չէր կարո՞ղ իր հորեղբայրը խնամել։ Սենյակն ինքը զավթեց, երեխային տվեց քեզ։ Բա դա խի՞ղճ է։

Ես զգույշ նայեցի դռան ճեղքից և ականջ դրեցի։ Հորս դեմքին զարմանքի, ապա բարկության նշաններ երևացին։

— Ոչինչ,— մեղմացած ասաց հայրս,— Արտակս եղբայր չունի, միասին կմեծանան, իրար թև ու թիկունք կլինեն։

Ուրախությունից հոգիս թնդաց, բայց զսպեցի հրճվանքս։ Տատս չհանդգնեց առարկել, բայց մեկուսի ինչ-որ բան փնթփնթաց։

Ես խղճում էի Կարոյին։ Նա ամոթխած էր, անհամարձակ, նույնիսկ ամաչում էր ասել՝ քաղցած եմ։ Նկատում էի, որ տատս նրա ափսեի մեջ լցնում էր մեկ շերեփ ճաշ և մի փոքր ոսկրոտ մսի կտոր, իսկ իմ ափսեի մեջ՝ երկու շերեփ ճաշ և մի քանի կտոր միս։ Կարոն լուռ ուտում էր ճաշը և չհագեցած բավական շոյում ծոծրակը։ Ես իմ բաժին մսի կտորներից մեկը ծածուկ տալիս էի նրան։ Նա արագ ուտում էր և աչքերի կկոցով հայտնում գոհունակությունը։ Աղիողորմ մլավելով, սեղանի շուրջը պտտվում էր ոսկրացած կատուն։ Մի անգամ Կարոն հացի փշրանքներից գցեց կատվի առաջ։

— Հիմա՛ր,— բարկացավ տատս,— էդ որ կշտացնում ես կատվին, դո՞ւ պետք է մկներին բռնես։

Կարոն նայեց ինձ ու ամոթից խոնարհեց գլուխը։

Քիչ հետո, երբ տատս հավաքում էր ափսեներն ու գդալները, խորամանկ կատուն, որ ծածուկ մտել էր խոհանոց, դուրս թռավ՝ մսի մի մեծ կտորով։ Տատս զայրացած նետեց ձեռքի շերեփը, բայց զարնվելով պատին, ետ դարձավ և ընկավ իր ոտքերի մոտ։ Ես չկարողացա զսպել ծիծաղս, բայց նկատելով տատիս խիստ հայացքը, սսկվեցի։

— Նա իմ ձեռքից չի՛ պրծնի,— բացականչեց տատս ու դուրս գնաց՝ փնտրելու կատվին։

Զնայած տատիս խիստ վերաբերմունքին, Կարոն ակնածում և հարգում էր նրան, լսում ու ժամանակին կատարում նրա հանձնարարությունները։

— Կարո՛, գնանք ֆուտբոլի,— առաջարկում էի ես։




Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Հարցրու Շողեր տատին, թույլ կտա՞։

— Նա չի իմանա, գնանք։

— Մինչև տատը թույլ չտա, չեմ գա։

Մի անգամ, ուշ աշնանը, մեր դասարանի տղաների հետ գնացի լողացա գետում։ Երկինքը մառախլապատ էր, օրը՝ ցուրտ, ջուրը՝ պաղ։ Երեկոյան բարձրացավ ջերմությունս, անկողին ընկա։ Ախորժակ չկար, ոչինչ չէի կարողանում ուտել։

Տատս հոնի մուրաբայով թեյ տվեց, որ քրտնեմ, ապա մառանից տանձ ու խնձոր բերեց։ Հարևան սենյակի դուռը կիսով չափ բաց էր։ Կարոն նստած դաս էր սովորում։

— Տատի՛, ախորժակ չունեմ, միրգը տուր Կարոյի՛ն։

— Անխե՛լք,— բարկացավ նա,— դո՛ւ կեր, որ շուտ առողջանաս։

— Տատի՛, որ Կարոն հիվանդացավ, ինչո՞ւ մուրաբա և խնձոր չտվեցիր։

Բարկությունից Շողեր տատի բիբերը լայնացան։

— Հիմա՛ր, դու իմն ես, է՛, իմ ջիգյարը... Կարո՞ն ով է:

Հարևանուհին ձայն տվեց:

Տատս, հավաքելով գետնին հասնող փեշերը, դուրս գնաց:

Ես կանչեցի Կարոյին և երեք խնձորներից ամենախոշորը տվեցի նրան: Չէր ուզում վերցնել, բայց նա էլ էր երեխա, չկարողացավ հրաժարվել:

Տատս վերադարձավ, ձեռքի փաթեթը դրեց պահարանը և մոտեցավ ինձ:

—Խնձորը կերա՞ր, բալաս, ջիգյա՛ր ջան, ցա՛վդ տանեմ:

—Կերա, տա՛տ, ամենամեծը:

— Ա՛յ ապրես,— ժպտաց, հետո հանկարծ խոժոռեց դեմքը և խուզարկու հայացքով ինչ-որ բան որոնեց:

— Ի՞նչ ես փնտրում, տատի՛:

— Կերածդ խնձորի պոչը հատակին գցեցի՞ր:

— Պո՞չը,— մի պահ շփոթվեցի, չիմանալով ինչ ասեմ:— Խնձորը պոչ չուներ, երևի մնացել էր ծառի վրա,— ասացի ես:

Տատի՛ս աչքերում կասկածի նշույլներ հայտնվեցին, բայց ոչինչ չասաց:

Կարոն և՛ ընդունակ էր, և՛ աշխատասեր, բոլոր առարկաներից «հինգ» էր ստանում:

— Դու նամուս չունես, չես կարողանում «հինգ» ստանալ,— նախատում էր ինձ տատս,— իր որբ տեղով նա քեզանից լավ է սովորում,— տատս ուզում էր, որ ես նախանձեի նրան, բայց չէի նախանձում, աշխատում էի հասնել նրան:

Ինձ այդ հաջողվեց:

Գրեթե աննկատ անցան մանկության ու պատանեկության տարիները: Այժմ էլ հարազատ եղբոր պես մտերիմ ենք ես ու Կարոն: Նա բժիշկ է, ես՝ ինժեներ:

Աներևակայելի է բժիշկ Կարոյի հոգատարությունը տատիս նկատմամբ: Ամեն անգամ, երբ այցելում է մեզ, տեսակ-տեսակ մրգեր է բերում արդեն ծերացած ու տկարացած Ծողերի համար:

— Տատի՛, խնձո՛ր կեր, շատ օգտակար է,— ասում է նա:

Ծողերն ախորժակով ուտում է քաղցրահամ մրգերը, և կարծում եք հիշո՞ւմ է, թե ինչ աչքով էր նայում իր «ջիգյարին» և ինչ աչքով «օտարին»: Մոռացել է: Անիթ լինելիս անկեղծորեն երդվում է, որ ջոկողություն չէր անում:

Երանի՜ թե այդպես եղած լիներ:

**ԱԼ. ԵԳԱՆՅԱՆ**

## ՀԶՈՐԻՑ ՀԶՈՐԸ ԿԱ...

**ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ**

— Անհաղթ եմ ես,—
Քամին ասաց
Ու փոթորկվեց,
Խելքն ինչ փչեց,
Այն էլ արավ,
Ամպն հյուսիսից
Քշեց հարավ,
Արմատախիլ
Արեց ծառին
Ու դեմ առավ
Հսկա ժայռին...
Ժայռը խնդաց.
— Ե՛ս եմ հսկան,—
Քամուն ասաց,—
Ո՞վ կկանգնի
Իմ դեմ-դիմաց,
Կրակ լինի,
Ջուր թե կայծակ,
Ծունկի կգա
Հայացքիս տակ:—
Հենց այդ պահին
Ամպերի մեջ,
Ծնունդ առած
Թեժ կայծակը
Եկավ խրվեց
Ժայռի կուրծքը...
— Ե՛ս եմ,— ասավ,
Ժայռից հզոր,
Ես եմ արար
Երկրի տերը,
Իմ ձեռքում է
Եվ եթերը:
Իմ ձեռքում է
Կյանքն անտառի...—
Այրեց բունը
Կաղնի ծառի:
Այրեց դաշտը
Կանաչ հագած,
Եվ նկատեց
Ծովին հանկարծ.
Փայլատակեց
Երկնից-երկիր,
Ու մխրճվեց
Ծովի գիրկը...
Քրքջալով
Ծովը ասաց.
— Ով կարծի թե՝
«Ես եմ որ կամ...
Հզորների հզորն եմ ես»,
Կանհետանա իսկը քեզ պես:

Սնկերը քլորոֆիլազուրկ բույսեր են, հետևապես ինքնուրույն սնվել չեն կարող։ Դրանք բնակվում են հիմնականում մեռած, քայքայվող օրգանիզմների վրա, սնվելով դրանց նյութերի հաշվին։ Նման օրգանիզմները կոչվում են սապրոֆիտներ։ Կան նաև այնպիսի սնկեր, որոնք ամրանալով այլ բույսերի արմատների վրա, իրենց արմատանման օրգաններով ծծում են դրանց հյութը, հյուծելով և շատ հաճախ ոչնչացնելով հյուրընկալ բույսերին։ Այսպիսի բույսերը կոչվում են մակաբույծներ (պարազիտներ)։ Դրանք խիստ վտանգավոր են այգիների ու ցանքերի համար, և մարդիկ բոլոր միջոցներով պայքարում են դրանց դեմ։

Սունկը արմատներ չունի. դրանց փոխարինում են հատուկ ելուստները, որոնք ճառագայթաձև տարածվում են շրջակայքում։ Ինչպես գիտենք, բոլոր բույսերը, առանց բացառության, աճում են միայն լույսի առկայության պայմաններում, իսկ սունկը գերադասում է մթությունը, քանի որ միևնույն է, նա լույսի ազդեցության տակ սննդանյութեր չի կարող կուտակել։

Այս և այլ առանձնահատկությունների շնորհիվ որոշ գիտնականներ գտնում են, որ սնկերը, որոնք համարվում են ստորակարգ բույսեր, պետք է առանձնացվեն որպես կենդանի օրգանիզմների նոր խումբ, որը զգալիորեն տարբերվում է թե՛ բուսական և թե՛ կենդանական տեսակներից, չնայած որոշ հատկանիշներով նման է թե՛ մեկին և թե՛ մյուսին։

Սակայն բոլոր սնկերը չէ, որ վնասակար են։ Դրանց մեջ կան բազմաթիվ տեսակներ, որոնք համագործակցում են բույսերի հետ՝ մեկը մյուսին օգտակար լինելու սկզբունքով։ Այսպես օրինակ, կաղնին, սոճին, եղևնին, կեչին դժվարությամբ են աճում և շատ հաճախ ոչնչանում են, եթե նրանց արմատների ծայրերին բնակություն չի հաստատում միկորիզա կոչվող սունկը, որը օրգանական նյութերից բույսերի համար մատչելի սննդանյութեր է անջատում և մատակարարում հյուրընկալ բույսերին, նրանցից ստանալով ջուր և զանազան հանքային ու օրգանական նյութեր։ Այս երևույթը կոչվում է սիմբիոզ՝ համակեցություն։ Սիմբիոզի դասական օրինակ է քարաքոսը։ Դպրոցական դասագրքերից մեզ արդեն հայտնի է, որ քարաքոսը սովորական բույս չէ, այն փաստորեն կազմված է երկու օրգանիզմից՝ սնկից և ջրիմուռից։ Սունկը խոնավություն է մատակարարում ջրիմուռին, իսկ ջրիմուռը, քլորոֆիլի պարունակության շնորհիվ, սնկին օրգանական նյութեր է մատակարարում։ Դրա շնորհիվ այս երկու օրգանիզմները ոչ միայն համերաշխ են ապրում, այլև բնության մեջ հանդես են գալիս որպես մի օրգանիզմ, որը կարող է աճել ամենաանբարենպաստ կլիմայական պայմաններում։

# ՍՆԿԵՐԸ ԲՈՒՅՍԵ՞Ր ԵՆ, ԹԵ՞ ՈՉ



Գլխարկավոր սնկերի խմբի որոշ տե-

սակներ պիտանի են ուտելու համար: Սակայն այդ խմբի մի զգալի մասը թունավոր է:

ՍՍՀՄ-ի անտառային գոտում հանդիպում են 154 տեսակի ուտվող սնկեր: Դրանք ոչ միայն արտակարգ համեղ են, այլև չափազանց օգտակար են: Դրանց մեջ պարունակվող արոմատիկ և էքստրակտիվ նյութերը գրգռում են ախորժակը, ուժեղացնում ստամոքսահյութի արտադրությունը: Սնկերը նպաստում են նյութափոխանակությանը և նույնիսկ ամրացնում են նյարդային համակարգը:

Թարմ, սպիտակ սունկը ավելի շատ կալորիաներ է պարունակում, քան ձուն: Սնկի բուլյոնը շատ ավելի սննդարար է, քան միսը: Աղ դրած ագարիկոնը սննդարարությամբ ոչնչով չի զիջում հավի մսին և ձկանը: Առանձնապես մեծ են ամենատարածված ուտելի սնկերի՝ շամպինիոնների, օգտակար հատկանիշները:

Այնուամենայնիվ, մեր անտառների սնկային պաշարները դեռևս ծայրահեղորեն անբավարար են օգտագործվում: Ռումինիայում յուրաքանչյուր անտառապատ 1000 հեկտար տարածությունից միջին հաշվով հավաքում են 1.03 տոննա սունկ (Հունգարիայում՝ 0.2, Չեխոսլովակիայում՝ 0.16, Լեհաստանում՝ 0.09, ՍՍՀՄ-ում՝ 0.02 տոննա):

Միշտ չէ, որ կարելի է սունկ հավաքել դաշտերից. դրա համար առանձնապես պիտանի են տարվա խոնավ սեզոնները: Ընդհանրապես խորհուրդ է տրվում սնկերը հավաքել ամպամած եղանակին և նույնիսկ անձրևի ժամանակ, երբ ավելի հեշտ են նկատվում խոտերի մեջ թաքնըված սնկերը և հավաքելուց հետո էլ սունկը հեշտությամբ է վերականգնում իր վընասված օրգանները:

Աշխարհում գոյություն ունեն մոտ 100 հազար տեսակի սնկեր, սակայն ուտելու համար պիտանի են դրանցից սոսկ 300-ը:

Հայաստանի սնկերը վատ են հետազոտված: Հայտնաբերված են 100-ից ավելի տեսակներ, որոնցից 92-ը պիտանի են ուտելու համար:

Չափազանց կարևոր է ճանաչել մեր հանրապետության տարածքում հանդիպող սնկերը: Տուրիստական արշավների ժամանակ այդ գիտելիքները ձեզ շատ պետք կգան:

**Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր**




**Դեռևս մեկ տասնամյակ առաջ կարծում էին, թե ամենաբեղմնավոր հեղինակը եղել է Լոպե դե Վեգան, որն ստեղծել է 2500 պիես:**

**Անտարակույս, նա չափազանց ինքնատիպ հեղինակ էր: Օրինակ՝ 1666 թվականին Մադրիդում հրապարակվել են նրա մի քանի ստեղծագործություններ, որոնցում չեն օգտագործված իսպաներենի տառերից մի քանիսը: Դրանցից մեկում, օրինակ, չկար Ա տառը, մյուսում՝ Ե-ն, երրորդում՝ Օ տառը:**

**Բեղմնավոր գրչի հսկաների թվում պետք է հիշատակել Կոստել Օրիդնեսհորը, որի գրչի տակից դուրս է եկել մոտ 6000 ստեղծագործություն: Չինուհի Լի Կույե-Յուն գրել է «Երազանքներ ծաղկող նշենիների մեջ» վեպը, որը բաղկացած է 360 հատորից: Եթե հրատարակվեն լեհ գրող Կրաշևսկու բոլոր ստեղծագործությունները՝ կստացվի 880 հատոր:**

**Վերադառնալով Լոպե դե Վեգային՝ հիշեցնենք, որ նա իր կատակերգություններից շատերը գրել է 2—3 օրում:**

**Այսպիսի արագությամբ ստեղծագործել են նաև այլ գրողներ, գիտնականներ ու երաժիշտներ: Ավիցեննայի համար, հավանորեն, շատ դժվար է եղել չորս օրում ստեղծել այնպիսի մի երկ, ինչպիսին է նրա «Մետաֆիզիկան»:**

**Դյումա-հայրը այնպիսի թափով էր ըստեղծագործում, որ քարտուղարը հազիվ էր հասցնում արտագրել նրա երկերը, թեպետ աշխատում էր առավոտից իրիկուն: Ժամանակ չկորցնելու համար Ալեքսանդր Դյուման կետադրական նշաններ չէր դընում: Կայծակնային արագությամբ էր իր բանաստեղծությունները հորինում Լամարթինը, իսկ Լ. Օսինսկին իր «Պրոմեթեոս» դրաման գրել է մեկ օրում: Վ. Վոյսկին մի գիշերում գրել է «Գլինկա» օպերայի լիբրետոն: Ռոսինին «Սևիլյան սափրիչը» գրել է 13 օրում:**

●Մոսկվայի Կրեմլի Սպասսկու աշտարակի կուրանտները տեղադրվել են 1625 թվականին: Դրանք Ռուսաստանի առաջին խոշոր կուրանտներն էին: Այն ժամացույցը, որ մենք տեսնում ենք այժմ, տեղադրվել է 1851—52 թթ.:

1917 թվականին հրաձգության ժամանակ ժամացույցը վնասվեց, բայց արդեն 1918 թվականի օգոստոսին այն ոչ միայն ճիշտ ժամանակն էր ցույց տալիս, այլև հնչեցնում էր «Ինտերնացիոնալը»:

●Ռոբոտ տնային տնտեսուհի են նախագծել ամերիկացի ինժեներները: Նա կարող է բացել և փակել դուռը, հավաքել տունը և դուրս տանել աղբը, խաղալ տան փոքրիկների հետ... Ռոբոտը ղեկավարվում է դիստանցիոն ճանապարհով՝ ռադիոյի կամ ձայնագրված ծրագրով մագնիտաֆոնային ժապավենի միջոցով:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Ավստրալիայում պատրաստվել է ռոբոտ պարաշյուտիստ: Մասնագետները վստահել են նրան պարաշյուտային նոր համակարգերը փորձարկողի դերը: Երկրից տրվող ռադիոհրահանգների համաձայն այս ռոբոտը, հնազանդ աշակերտի պես, ձգում է այս կամ այն պարանը:




●Միլիոնը միավոր է 6 զրոյով, միլիարդը՝ 9 զրոյով, տրիլիոնը՝ 12 զրոյով: Ավելի մեծ թվերի անվանումները պակաս հայտնի են, քանի որ տեղի տնտեսման պատճառով դրանք սովորաբար գրվում և արտասանվում են որպես 10 թվի աստիճանահամար: Բայց հսկա թվերից մի քանիսը ունեն իրենց հատուկ անվանումները: Այսպես, 15 զրոյով միավորը կամ $10^{15}$ աստիճանը կոչվում է կվադրիլիոն, $10^{18}$ աստիճանը՝ կվինտիլիոն, $10^{21}$ աստիճանը՝ սեկստիլիոն, $10^{24}$ աստիճանը՝ սեպտիլիոն, $10^{27}$ աստիճանը՝ օկտիլիոն...

Ամերիկացի մաթեմատիկոս Կաստները հայտնաբերել է «ամենամեծ թիվը» և անվանել այն «գուգոլ»: Գուգոլը 100 զրոյով միավոր է: Պրակտիկայում սովորաբար չափման այս միավորը չի գործածվում: Ինչու՞: Ողջ տիեզերքում չկա մի բան, որ կարելի լիներ չափել այդ միավորով: Երկրի ծավալը խորանարդ միլիմետրերով կազմում է $10^{30}$ աստիճանը: Ամբողջ տեսանելի տիեզերքը մեծ է մեկ ատոմից «ընդամենը» $10^{40}$ աստիճանով: Եվ նույնիսկ եթե հաշվելու լինենք տարրական մասնիկները, ամբողջ տիեզերքում, մաթեմատիկոսների կարծիքով, կստացվեր գուգոլից փոքր թիվ՝ $10^{88}$ աստիճանը:



## ՈՐՔԱ՞Ն Է ԿՇՌՈՒՄ ԵՐԵԽԱՆ

Տիկին Օ՛Տուլը բավականին տնտեսող կին էր և այդ պատճառով որոշեց ընդամենը 10 սենթ ծախսելով կշռել թե՛ երեխային և թե՛ շանը: Որքա՞ն էր կշռում երեխան, եթե հայտնի է, որ տիկին Օ՛Տուլը կշռում է 100 ֆունտ ավելի, քան շանը և երեխան միասին, և որ շունը 60 տոկոսով պակաս է կշռում երեխայից:

## ԻՆՉՊԻՍԻ՞Ն ԵՆ ԸՆՁՈՒՂՏԻ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Գլուխկոտրուկների երկրում տեղի են ունենում սպորտային մրցումներ: Եթե երկու մղոնանոց վազքի ժամանակ ընձուղտը կարող է մղոնի 1/8 չափով հաղթել ռնգեղջյուրին, իսկ ռնգեղջյուրը ընդունակ է առաջ անցնել գետաձիուց 1/4 մղոնի չափով, ապա ասացեք, թե ընձուղտը մըղոնի ո՞ր չափով առաջ կանցնի գետաձիուց:



## ՈՍՏԻԿԱՆ-ՄԱԹԵՄԱՏԻԿՈՍԸ

— Բարի լո՛ւյս, սերժա՛նտ,— ասաց պարոն Մաք-Գուիրը,— չէի՞ք ասի, ժամը քանիսն է:

— Դա շատ հեշտ կարելի է իմանալ,— պատասխանեց սերժանտ Կլենսին, որը հայտնի էր որպես ոստիկանատան հըռչակավոր մաթեմատիկոս,— վերցրեք կեսգիշերից մինչև ներկա պահը ընկած ժամանակի քառորդ մասը, ապա դրան գումարեք ներկա պահից մինչև կես գիշեր ընկած ժամանակի կեսը և կստանաք ճիշտ ժամը:

Կարո՞ղ եք իմանալ, ժամը քանիսին էր տեղի ունենում այս խոսակցությունը:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՑԱՆԴՈՒՐԻ





ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15:*
*Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38:*

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)

Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 1.04.83 թ.: Ստորագրված է տպագրության 30.05 1983 թ.: ՎՖ 11505: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 70070: Պատ. 854: Գինը՝ 15 կ.:

Сдано в набор 1.04.83 г. Подписано к печати 30.05.1983 г. Формат 70×100 1/16. ВФ 11505. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 9,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 70070. Заказ 854. Цена 15 коп.